

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 1982

*Մենք իրավունք ունենք հպարտանալու և մեզ երջանիկ համարելու նրանով, որ երկրագնդի մի անկյունում մեզ առաջինը վիճակվեց խորտակել այն վայրի գազանին՝ կապիտալիզմին, որն արյամբ հեղեղել է երկիրը, սովի ու վայրենացման հասցրել մարդկությունը, և որքան էլ հրեշավոր գազանային լինեն նրա հոգեվարքային վայրագությունների արտահայտությունները՝ նա անխուսափելիորեն և շուտով կկործանվի։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**12** ԴԵԿՏԵՄԲԵՐ, 1982
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ»** («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ● ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1982 թվականի նոյեմբերի 22-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը լսեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Ն. Կ. Բայբակովի զեկուցումը «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1983 թվականի պետական պլանի մասին» և ՍՍՀՄ ֆինանսների մինիստր ընկ. Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումը «ՍՍՀՄ 1983 թվականի պետական բյուջեի մասին»:

Զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ հանդես եկան ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Վ. Ռոմանովը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Է. Ա. Շևարդնաձեն, Ուկրաինական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ա. Պ. Լյաշկոն, ՍՍՀՄ մթերումների մինիստր ընկ. Գ. Ս. Զոլոտուխինը, ՍՄԿԿ Տյումենի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Պ. Բոգոմյակովը, Ռոստովի մարզի «Լենինի ուղի» կոլտնտեսության կոմբայնավար-օղակավարուհի ընկ. Ն. Վ. Պերեվերզևան, Ղազախստանի կոմկուսի Կուստանայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Պ. Դեմիդենկոն, Կազանի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների գործարանի մոնտաժորդ ընկ. Գ. Պ. Լոցմանովան, Բելոռուսիայի կոմկուսի Գրոդնոյի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Գ. Կլեցկովը, ՍՍՀՄ մոնտաժային և հատուկ շինարարական աշխատանքների մինիստր ընկ. Բ. Վ. Բակինը:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի վերաբերյալ միաձայն ընդունեց որոշում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուից անդամ փոխադրեց ընկ. Հ. Ա. Ալիևին:

Կենտկոմի պլենումը ընկ. Ա. Պ. Կիրիլենկոյին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի և Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ առողջական վիճակի պատճառով և իր անձնական խնդրանքով: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովը նշեց, որ ընկ. Ա. Պ. Կիրիլենկոն երկար տարիներ ակտիվորեն աշխատել է ինչպես տեղական կուսակցական մարմիններում, այնպես էլ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում, և մենք պատշաճն ենք հատուցում կուսակցությանն ու երկրին նրա մատուցած ծառայություններին:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընտրեց ընկ. Ն. Ի. Ռիժկովին:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամության թեկնածուներից անդամներ փոխադրեց ՍՍՀՄ պետբանկի վարչության նախագահ ընկ. Վ. Ս. Ալխիմովին, Ուկրաինայի կոմկուսի Ղրիմի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ս. Մակարենկոյին, Ռոստովի մարզի «Լենինի ուղի» կոլտնտեսության կոմբայնավար-օղակավարուհի ընկ. Ն. Վ. Պերեվերզևային:

Կենտկոմի պլենումը հավանություն տվեց «Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի հիշատակը հավերժացնելու մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմանը:

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:

## ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը

# ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1983 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ԵՎ ՍՍՀՄ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

1. Հիմնականում հավանություն տալ **ՍՍՀՄ** տնտեսական ու սոցիալական զարգացման 1983 թվականի պետական պլանի և **ՍՍՀՄ** պետական բյուջեի նախագծերին:

**ՍՍՀՄ** Մինիստրների խորհրդին՝ վերոհիշյալ նախագծերը ներկայացնել **ՍՍՀՄ** Գերագույն սովետի քննարկմանը:

2. Ամբողջովին ու լիովին հավանություն տալ ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության XXVI համագումարի մշակած կուրսի կենսագործման, կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման ուղղությամբ **ՍՄԿԿ** Կենտկոմի քաղբյուրոյի պրակտիկ գործունեությանը:

Հավանություն տալ **ՍՄԿԿ** Կենտկոմի պլենումում **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի ճառում շարադրված դրույթներին ու հետևություններին և դրանք դնել բոլոր կուսակցական կազմակերպությունների գործունեության հիմքում:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին, կուսակցական կազմակերպություններին, սովետական, արհմիութենական ու կոմերիտական մարմիններին, մինիստրություններին ու գերատեսչություններին՝ կազմակերպչական և մասսայական-քաղաքական աշխատանք ծավալել՝ ուղղված տնտեսական-քաղաքական հերթական խնդիրների կատարման, **ՍՍՀՄ**-ի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման նպատակին, անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել ընթացիկ տարվա առաջադրանքների հաջող ավարտման, տնտեսական ու սոցիալական զարգացման 1983 թվականի պլանի կատարման և գերակատարման համար:

Նշելով ամբողջությամբ վերցրած հնգամյակի համար տնտեսական ու սոցիալական զարգացման 1983 թվականի պլանի հաջող կատարման հատկապես կարևոր նշանակությունը, Կենտկոմի պլենումը կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ուշադրությունն է հրավիրում այն բանի վրա, որ անհրաժեշտ է բոլոր ջանքերն ուղղել կուսակցության XXVI համագումարի առաջ քաշած կարևորագույն խնդրի իրականացմանը՝ հանրային արտադրության ինտենսիվացման ուժեղացմանը և ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացմանը:

Եղած հնարավորությունները առավելագույն չափով օգտագործել ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում տնտեսական գործունեության բարելավման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի



արտադրողականության բարձրացման, արտադրանքի թողարկման ավելացման և որակի բարձրացման համար: Հատուկ ուշադրություն նվիրել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում կապիտալ շինարարության զգալի բարելավմանը, համապատասխան միջոցառումներ իրականացնել վառելիքի, հումքի, մետաղի և մյուս նյութերի, ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների ծախսման նորմաների պահպանման նպատակով: Առաջնահերթ խնդիր համարել էկոնոմիկայի պլանավորման և կառավարման հետագա բարելավման, տնտեսավարման ոճի ու մեթոդների կատարելագործման աշխատանքի մակարդակի ըստ ամենայնի բարձրացումը:

Պետք է առաջնակարգ ուշադրություն նվիրվի **ՍՄԿԿ** Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների կատարմանը, **ՍՍՀՄ** պարենային ծրագրի իրականացմանը, վառելիքաէներգետիկ կոմպլեքսի պլանաչափ զարգացմանը, սովետական մարդկանց կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացմանը:

Այդ կապակցությամբ պետք է կարևոր նշանակություն տրվի արտադրության յուրաքանչյուր տեղամասում, կառավարման բոլոր ոլորտներում պետական, աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդմանը, աշխատանքում կազմակերպվածության և գործարարության բարձրացմանը, արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության մեջ, տրանսպորտում և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում սոցիալիստական մրցության լայն ծավալմանը, տնտեսական զարգացման ինտենսիվ գործոնների, առկա ռեզերվների ավելի լրիվ օգտագործմանը, ռեսուրսների բոլոր տեսակների խնայողությանը, որակական ցուցանիշների բարելավմանը, ավելի քիչ ծախսումներով առավել մեծ վերջնական արդյունքների ձեռքբերմանը: Արտադրության մեջ հաստատակամորեն ներդնել գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումները: Ապահովել ընդունված որոշումների կատարման խիստ վերահսկողությունը:

Բարձրացնել արտաքին տնտեսական կապերի արդյունավետությունը և առաջին հերթին ընդլայնել ու խորացնել համագործակցությունը սոցիալիստական երկրների հետ:

3. **ՍՄԿԿ** Կենտրոնական կոմիտեի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի բանվորները, կոլտնտեսականները, մտավորականությունը, բոլոր աշխատավորները, սերտորեն համախմբված կոմունիստական կուսակցության շուրջը, ըստ արժանվույն կդիմավորեն **ՍՍՀ** Միության կազմավորման 60-ամյակը, 1983 թվականը կնշանավորեն տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում կատարած նոր մեծագործություններով, կապահովեն երկրի հետագա հաջող առաջընթացը լենինյան ուղիով դեպի կոմունիզմ:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ՅՈՒ. Վ. ԱՆԴՐՈՊՈՎԻ ՃԱՌԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ 1982 ԹՎԱԿԱՆԻ ՆՈՅԵՄԲԵՐԻ 22-ԻՆ

*Ընկերնե՛ր:*

*Մենք ավարտում ենք հնգամյակի հերթական տարվա պլանի և բյուջեի նախագծերի քննարկումը: Մեզ ներկայացված փաստաթղթերում արդեն հաշվի են առնվել մի շարք էական դիտողություններ, որոնք արվել էին քաղբյուրոյում: Կարծում եմ, որ պլանի կատարման ընթացքում Մինիստրների խորհուրդը հաշվի կառնի նաև այն առաջարկությունները, որ արեցինք այսօր, ընկերներ:*

*Դատելով ըստ այն բանի, ինչ ասում էին պլենումում ելույթ ունեցած ընկերները, մենք ընդհանուր կարծիքի ենք՝ պլանի և բյուջեի նախագծերը ամբողջությամբ վերցրած համապատասխանում են ՍՄԿԿ XXVI համագումարի հիմնադրույթներին և դրանց պետք է հավանություն տալ:* (Ծափահարություններ):

*Ի՞նչն է բնորոշ պլանի նախագծի համար: Նախատեսված է արագացնել էկոնոմիկայի զարգացման տեմպերը, մեծացնել ազգային եկամտի, արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի աճի բացարձակ չափերը, մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը: Նախատեսվում է շարունակել ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման աշխատանքները, լարված առաջադրանքները պետք է կատարվեն նյութական ծախսերի և աշխատանքային ռեսուրսների համեմատաբար նվազ ավելացմամբ:*

*Կարևոր է շեշտել, որ նախագծում պահպանվում է աշխատավորների բարեկեցության բարձրացման կուսակցության գիծը: Պլանավորվում է «Բ» խմբի ճյուղերի առավել արագ աճ, ժողովրդական սպառման ապրանքների թողարկման ավելացում: Նյութական ու ֆինանսական խոշոր ռեսուրսներ են հատկացվում ագրոարդյունաբերական կոմպլեքսի հետագա զարգացման համար: Այսուհետ ևս կաճեն բնակչության ռեալ եկամուտները: Հնգամյակի առաջադրանքներին համապատասխանում է նաև բնակարանային շինարարության ծավալը:*

*Այսպիսով, պլանի նախագիծը հաստատում է, որ սովետական մարդու, նրա աշխատանքի ու կենցաղի պայմանների, նրա հոգևոր զարգացման նկատմամբ հոգատարությունը մնում է կուսակցության կարևորագույն ծրագրային դրույթը:*

*Ինչպես միշտ, բավարար չափով հաշվի են առնված պաշտպանության պահանջմունքները: Քաղբյուրոն պարտադիր գործ է համարել ու համարում է բանակին և նավատորմին տալ ամեն անհրաժեշտ բան, հատկապես ներկա միջազգային իրադրության պայմաններում:*

*Բյուջեի նախագիծը ապահովում է ժողովրդական տնտեսության և սոցիալ-կուլտուրական զարգացման ֆինանսավորումը:*

*Ընկերնե՛ր: Կուսակցության Կենտրոնական կոմիտեի ներկա պլենումը տեղի է ունենում տասնմեկերորդ հնգամյակի պլանների իրականացման պայ-*



*քարի կարևոր փուլում՝ հնգամյակի երրորդ՝ այսպես ասած, առանցքային տարվա նախօրյակին: Մենք քիչ բան չենք արել: Բայց առջևում դժվարին և լարված աշխատանք կա:*

*Կկամենայի ամբողջ ուժով ձեր ուշադրությունը հրավիրել այն փաստի վրա, որ մի շարք կարևորագույն ցուցանիշների գծով հնգամյակի առաջին երկու տարվա պլանային առաջադրանքները չեն կատարվել: Դա, բնականաբար, անդրադառնում է նաև այն նախագծի վրա, որը մենք այսօր քննարկում ենք:*

*Կենտրոնական կոմիտեի անդամները հիշում են Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի վերջին ելույթները, Կենտկոմի քաղբյուրոյին ուղարկված նրա գրությունները տնտական զարգացման հարցերի վերաբերյալ: Նա հարցն այսպես էր դնում. կուսակցության համագումարներում և Կենտկոմի պլենումներում մենք մշակել ենք գիտականորեն հիմնավորված տնտեսական քաղաքականություն, վերցրել ենք արտադրության արդյունավետության բարձրացման, նրա ինտենսիվացման կուրս: Բայց այդ ռելսերի վրա մեր տնտեսության փոխադրումը, արդյունավետության ուղղությամբ շրջադարձը դեռևս դանդաղ են կատարվում:*

*Էկոնոմիկայի արդյունավետության գլխավոր ցուցանիշը՝ աշխատանքի արտադրողականությունը, աճում է այնպիսի տեմպերով, որոնք մեզ չեն կարող բավարարել: Մնում է հումքային և վերամշակող ճյուղերի զարգացման ասպարեզում անհամակապակցվածության պրոբլեմը: Փաստորեն չի նվազում արտադրանքի նյութատարությունը:*

*Պլանները առաջվա պես կատարվում են ի հաշիվ մեծ ծախսումների և արտադրածախսերի: Դեռևս քիչ չեն այնպիսի տնտեսական ղեկավարները, որոնք, հաճույքով մեջբերելով Լեոնիդ Իլյիչի այն թևավոր խոսքերը, թե էկոնոմիկան պետք է լինի խնայողական, գործնականում շատ քիչ բան են անում այդ խնդրի լուծման համար:*

*Ըստ երևույթին, դեռևս շարունակում են գործել իներցիայի ուժը, հնի սովորույթը: Իսկ ոմանք էլ, երևի, պարզապես չգիտեն, թե ինչպես ձեռնամուխ լինեն գործին: Անհրաժեշտ է մտածել այն մասին, թե ինչպիսի օգնություն պետք է ցույց տրվի այդպիսի ընկերներին: Իսկ գլխավորն է՝ արագացնել էկոնոմիկայի ղեկավարման ամբողջ ոլորտի՝ կառավարման, պլանավորման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման աշխատանքը:*

*Անհրաժեշտ է ստեղծել տնտեսական ու կազմակերպական այնպիսի պայմաններ, որոնք խթանեն որակյալ, արտադրողական աշխատանքը, նախաձեռնությունն ու ձեռներեցությունը: Եվ, ընդհակառակն, վատ աշխատանքը, անգործությունը, անպատասխանատվությունը պետք է ամենաանմիջական և անկասելի կերպով անդրադառնան թե՛ աշխատողների նյութական վարձատրության, թե՛ նրանց պաշտոնական դիրքի, թե՛ բարոյական հեղինակության վրա:* (Ծափահարություններ):

*Անհրաժեշտ է ուժեղացնել պատասխանատվությունը համապետական, համաժողովրդական շահերի պահպանման համար, վճռականապես արմատախիլ անել գերատեսչականությունն ու տեղայնությունը: Հարկավոր է կանոն դարձնել, որ միևնույն հարցի վերաբերյալ ամեն մի նոր որոշում ընդունվի միայն այն ժամանակ, երբ կատարվել են անցյալ որոշումները կամ երևան են եկել ինչ-որ նոր հանգամանքներ: Հարկավոր է ավելի վճռական պայքար մղել կուսակցական, պետական և աշխատանքային կարգապահության ամեն տեսակ խախտումների դեմ: Վստահ եմ, որ այս գործում մենք կստանանք կուսակցական և արհմիութենական կազմակերպությունների լիակատար աջակցությունը, բոլոր սովետական մարդկանց աջակցությունը:* (Ծափահարություններ):

*Վերջին ժամանակներս քիչ չեն խոսում այն մասին, որ հարկավոր է ընդլայնել միավորումների և ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ինքնուրույնությունը: Կարծում եմ, որ եկել է ժամանակը գործնականորեն մոտենալու այդ հարցի լուծմանը: Դրա վերաբերյալ հանձնարարություններ են տրվել Մինիստրների խորհրդին և պետպլանին: Այստեղ հարկավոր է գործել շրջահայացորեն, եթե հարկավոր է՝ փորձեր կատարել, կշռադատել, հաշվի առնել նաև եղբայրական երկրների փորձը: Ինքնուրույնության ընդլայնումը բոլոր դեպքերում պետք է զուգորդվի պատասխանատվության*

բարձրացման, համաժողովրդական շահերի նկատմամբ հոգատարության հետ։

Մենք ժողովրդական տնտեսության մեջ մեծ ռեզերվներ ունենք։ Այս մասին ասվեց նաև այսօրվա ելույթներում։ Այդ ռեզերվները պետք է որոնել գիտատեխնիկական առաջընթացի արագացման գործում, գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի նվաճումները արտադրության մեջ լայնորեն և արագ ներդնելու գործում։ Այս հարցը, իհարկե, նոր չէ։ Այն բազմիցս առաջադրվել է կուսակցության համագումարներում և Կենտկոմի պլենումներում։ Եվ, այնուամենայնիվ, գործը դանդաղ է առաջ շարժվում։ Ինչո՞ւ։ Պատասխանը նույնպես վաղուց հայտնի է. նոր մեթոդը, նոր տեխնիկան ներդնելու համար հարկավոր է այսպես թե այնպես վերակառուցել արտադրությունը, իսկ դա անդրադառնում է պլանի կատարման վրա։ Մանավանդ որ արտադրության պլանի ձախողման համար պատասխան են պահանջում, իսկ նոր տեխնիկայի թույլ արմատավորման համար ամենաշատը, ասենք, թեթև կհանդիմանեն։

Եթե մենք ուզում ենք իրոք առաջ մղել նոր տեխնիկայի և աշխատանքի նոր մեթոդների ներդրման գործը, հարկավոր է, որ կենտրոնական տնտեսական մարմինները, գիտությունների ակադեմիան, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն, մինիստրությունները ոչ թե պարզապես պրոպագանդեն դրանք, այլ ի հայտ բերեն ու վերացնեն այն կոնկրետ դժվարությունները, որոնք խանգարում են գիտատեխնիկական առաջընթացը։ Գիտության և արտադրության միացմանը պետք է նպաստեն պլանավորման մեթոդները և նյութական խթանման համակարգը։ Հարկավոր է, որ նրանք, ովքեր համարձակորեն դիմում են նոր տեխնիկայի ներդրման, անշահավետ դրության մեջ չընկնեն։

Մյուս խոշոր ռեզերվը նյութական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումն է։ 1983 թվականի պլանով սահմանվում են դրանց խնայողության ավելի բարձր առաջադրանքներ։ Կկամենայի ընկերների ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ այժմ նյութական ռեսուրսների խնայողության հարցը պետք է դիտվի նորովի, այլ ոչ թե այնպես, որ «խնայեցիր՝ լավ, չխնայեցիր՝ ոչինչ»։

Այժմ խնայողությունը, ժողովրդական բարիքի նկատմամբ հոգատար վերաբերմունքը դա մեր պլանների ռեալության հարցն է։ Եվ դրա լուծումը անհրաժեշտ է ապահովել գործնական միջոցառումների մի ամբողջ համակարգով, նախ և առաջ՝ ՍՍՀՄ պետպլանի և ՍՍՀՄ պետմատի, մինիստրությունների և գերատեսչությունների կողմից։ Մեծ աշխատանք պետք է կատարեն բոլոր կուսակցական կոմիտեներն ու կուսակցական կազմակերպությունները։

Մեզանում կան ստեղծագործական աշխատանքի, ժողովրդական բարիքի նկատմամբ իսկական հոգատար վերաբերմունքի ոչ քիչ օրինակներ։ Բայց այդ փորձը, ցավոք, պատշաճ տարածում չի գտնում։ Մինչդեռ այստեղ հաճախ չեն պահանջվում հատուկ ծախսումներ։ Ուրեմն չի բավականացնում մի այլ բան՝ նախաձեռնությունը, վճռական պայքարը անտնտեսվարության, շռայլության դեմ։

Իհարկե, այս խնդիրը լուծել կարելի է միայն մեր ձեռնարկությունների, մեր կոլտնտեսությունների և սովխոզների յուրաքանչյուր բանվորի, յուրաքանչյուր աշխատավորի մասնակցությամբ։ Հարկավոր է հասնել այն բանին, որ նրանք այդ խնդիրն ընդունեն որպես իրենց սեփական գործը։

Մի խոսքով, ընկերներ, ժողովրդական տնտեսության մեջ շատ են հասունացած խնդիրները։ Ես, անշուշտ, չունեմ դրանց լուծման պատրաստի հանձնարարագրեր։ Բայց հենց մենք բոլորս՝ կուսակցության Կենտրոնական կոմիտեն պետք է գտնի այդ պատասխանները։ Գտնի, ընդհանրացնելով հայրենական և համաշխարհային փորձը, կուտակելով լավագույն գործնական աշխատողների և գիտնականների գիտելիքները։ Մի խոսքով, միայն լոզունգներով գործը տեղից չես շարժի։ Անհրաժեշտ է կուսակցական կազմակերպությունների, տնտեսական ղեկավարների, ինժեներատեխնիկական աշխատողների կազմակերպչական մեծ աշխատանքը, որպեսզի այդ հսկայական կարևոր խնդիրներից յուրաքանչյուրը դիտվի ոչ միայն յուրաքանչյուր ճյուղի, այլև յուրաքանչյուր արտադրամասի, տեղամասի և, եթե կուզեք, յուրաքանչյուր աշխատատեղի տեսանկյունից։



Կկամենայի նշել, որ այս հարցերը առաջնահերթ և երկրի համար կենսականորեն կարևոր հարցեր են։ Եթե դրանք հաջողությամբ լուծենք՝ կշարունակի աճել էկոնոմիկան, կբարձրանա նաև ժողովրդի բարեկեցությունը։

Մեր պլաններում կենտրոնական տեղ են գրավում պարենային ծրագրի իրականացման հետ կապված միջոցառումները։

Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների իրականացման ասպարեզում առաջին քայլերը հարկ եղավ կատարել բավական դժվարին իրադրության մեջ։ Եղանակը այս տարի էլ մեզ չգոհացրեց։ Եվ, այնուամենայնիվ, կարևոր է նշել գյուղի աշխատավորների անձնվեր աշխատանքը։ Դրա շնորհիվ, ինչպես նաև գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման շնորհիվ, մի շարք մարզեր, երկրամասեր ու հանրապետություններ վատ արդյունքների չհասան։ Հացահատիկային կուլտուրաների բերքը անցյալ տարվա համեմատությամբ նկատելիորեն ավելացավ, աճեցվեց բամբակի, բանջարեղենի, խաղողի ոչ վատ բերք։ Ավելացավ կաթի և ձվի արտադրությունը։ Թափ են առնում արդյունաբերական ձեռնարկությունների օժանդակ տնտեսությունները։ Իրեն արդարացնում է նաև հոգածությունը անձնական օժանդակ տնտեսությունների զարգացման նկատմամբ։ Դրա հետ մեկտեղ որոշ պարենային ապրանքների մատակարարման գործում եղած խափանումները դեռևս չեն վերացվել։

Իհարկե, ամենքը հասկանում են, որ պարենային ծրագրի իրականացումը մեկ տարվա գործ չէ։ Դա այդպես է։ Բայց մենք պետք է ուղղակի ասենք նաև մի այլ բան՝ պարենային ծրագրի կատարումը չի կարելի ձգձգել։ Ագրոարդյունաբերական կոմպլեքսի աշխատողները պետք է օրավուր մեծացնեն ջանքերը, աշխատեն այնպես, որ այդ խնդրի լուծմանը հատկացվող հսկայական միջոցները փոխհատուցում տան արդեն այսօր և է՛լ ավելի մեծ փոխհատուցում՝ վաղը։

Քաղբյուրոն գտնում է, որ կուսակցական կոմիտեների առաջիկա պլենումներում և ակտիվներում, ժողովրդական դեպուտատների սովետների նստաշրջաններում, որոնք քննարկելու են եկող տարվա պլանները, պետք է քննության առնվի նաև Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների իրականացման ընթացքը։ Հարկավոր է, որ էկոնոմիկայի այդ կարևոր բնագավառում կատարվող բոլոր պրակտիկ գործողությունները մենք ստուգենք՝ ելնելով պարենային ծրագրից։

Մանրամասնորեն չեմ խոսի այն մասին, որ հարկավոր է լավ եզրափակել գյուղատնտեսական տարին, պահպանել հավաքված բերքը, դնել եկող տարվա բերքի հիմքերը, հաջողությամբ անցկացնել անասունների ձմեռումը։ Այս ամենը ինքնին հասկանալի է։ Հարկավոր է առանց դանդաղելու անցնել նոր խնդիրների լուծմանը, դրանք սերտորեն շաղկապելով ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացման արմատական ուղղությունների հետ, նկատի ունենալով, որ խոսքը վերաբերում է հենց կոմպլեքսին, որտեղ երկրորդական խնդիրներ չկան։

1983 թվականի պլանում մեծ ուշադրություն է նվիրվում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացմանը և որակի բարելավմանը, մի բան, որին Լեոնիդ Իլյիչը առանձնահատուկ նշանակություն էր տալիս։ Խնդիրն այն է, որ ոչ միայն ավելացվի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, այլև զգալիորեն բարձրացվի դրանց որակը։ Դա վերաբերում է ոչ միայն թեթև ու տեղական արդյունաբերությանը, այլև ծանր ու պաշտպանական ինդուստրիայի ձեռնարկություններին։

Լայն սպառման ապրանքների արտադրությանն ինչպես հարկն է պետք է ձեռնամուխ լինեն կուսակցական և սովետական մարմինները, որի մասին այստեղ միանգամայն ճիշտ ասաց ընկեր Բայբակովը։ Իրոք, չի կարելի նորմալ համարել, երբ մի շարք հասարակ ապրանքների արտադրության հարցը քիչ է մնում, որ լուծվի ՍՍՀՄ պետպլանում։ Հարկավոր է, որ այդ հոգսը իրենց վրա վերցնեն տեղական մարմինները և լիովին պատասխանատու լինեն դրա լուծման համար։

*Այժմ թույլ տվեք անդրադառնալ արդյունաբերության բազային ճյուղերի զարգացման մի քանի հանգուցային պրոբլեմներին։ Ամենից առաջ՝ վառելիքաէներգետիկ կոմպլեքսի հետագա զարգացման մասին։ Սկզբնական էներգետիկ ռեսուրսների՝ 1983 թվականի համար պլանավորվող աճը՝ մոտավորապես 41 միլիոն տոննա պայմանական վառելիք, մեզ համար լիովին մատչելի է։ Դա հնարավորություն է ընձեռում ապահովելու բոլոր էներգասիստեմների անխափան, համաչափ աշխատանքը։*

*Շատ կարևոր է տնտեսաբար օգտագործել ածուխը, բնական գազը, նավթը, նավթամթերքները, ջերմային և էլեկտրական էներգիան։ Դա պահանջում է, անշուշտ, որոշակի վերակառուցում բոլոր ճյուղերում և ամենից առաջ՝ էներգախնայողական տեխնիկայի ու տեխնոլոգիայի լայն ներդրում, նորմատիվների բարելավում, խնայողության համար մղվող պայքարում նյութական ու բարոյական խթանների օգտագործում, գերածախսի, նորմաների ու լիմիտների գերազանցման համար ավելի խիստ պատասխանատվություն։*

*ՍՍՀՄ Գերագույն սովետի առաջիկա նստաշրջանում նախատեսվում է առաջարկություն մտցնել՝ Միության սովետում և Ազգությունների սովետում կազմակերպել էներգետիկայի մշտական հանձնաժողովներ, որոնք կկարողանան վերահսկել մինիստրությունների աշխատանքը, ամեն աստիճանի տնտեսական ղեկավարներից պատասխան պահանջել ռեսուրսների անխնայողական օգտագործման համար։*

*Հարկավոր է ակտիվացնել երկրամասերում, մարզերում և հանրապետություններում ստեղծված հանձնաժողովների աշխատանքը, որոնք կոչված են վերահսկելու այդ գործի կազմակերպումը ձեռնարկություններում։*

*Քաղբյուրոն անհանգստացած է տրանսպորտի ասպարեզում տիրող իրավիճակից։ Հաղորդակցության ճանապարհների մինիստրությունը առաջվա պես չի ապահովում ժողովրդական տնտեսության պահանջմունքները վառելիքի, անտառանյութի, այլ բեռների փոխադրումների ասպարեզում։ ՍՄԿԿ Կենտկոմում դրա վերաբերյալ մեծ թվով ահազանգեր են ստացվում տեղական սովետական ու տնտեսական մարմիններից։ Հենց այդ մասին էլ այսօր խոսվեց Կենտկոմի պլենումում։*

*Երկաթուղիների աշխատանքի ցուցանիշները, ցավոք, տարեցտարի վատանում են, չնայած այն լուրջ օգնությանը, որ հաղորդակցության ճանապարհների մինիստրությանը ցույց է տալիս կառավարությունը։ Այդ մինիստրության գծով կապիտալ ներդրումների՝ ծավալը 1975 թվականի համեմատությամբ աճել է 43 տոկոսով, իսկ մագիստրալային ջերմաքարշերի և էլեկտրաքարշերի համակազմը ավելացել է 23 տոկոսով։ ՍՄԿԿ Կենտկոմը և կառավարությունը մի շարք որոշումներ են ընդունել երկաթուղայինների սոցիալական պայմանները բարելավելու, տրանսպորտում տնտեսական մեխանիզմը կատարելագործելու վերաբերյալ։ Սակայն ձեռնարկված միջոցներից պատշաճ փոխհատուցում առայժմ չկա։*

*Հաղորդակցության ճանապարհների մինիստրությունում ցածր մակարդակով է կատարվում լոկոմոտիվային համակազմի նորոգման ու շահագործման կազմակերպումը, երթևեկության կազմակերպումը։ Ըստ երևույթին հարկ կլինի, որ ոչ միայն այդ մինիստրության ղեկավարությունը, այլև ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և ՍՄԿԿ Կենտկոմը լուրջ հետևություններ անեն այն դիտողություններից, որ արվեցին այստեղ՝ պլենումում։ (Ծափահարություններ):*

*Հաճախակի են դարձել անկանոնությունները սև մետալուրգիայի ձեռնարկությունների աշխատանքում։ Թե՛ անցյալ տարի, թե՛ այս տարի այդ ճյուղը չի կատարում պլանային առաջադրանքները։ Ժողովրդական տնտեսությանը նախատեսվածից պակաս է տրվել մի քանի միլիոն տոննա գլանվածք։ Այդ առաջ սև մետալուրգիայի մինիստրությունը։ Իհարկե, կան նաև օբյեկտիվ դժվարություններ։ Հիմնական ֆոնդերի զգալի մասը պահանջում է վերակառուցում, արդիականացում։ Մինիստրությանը անհրաժեշտ է լուրջ օգնություն պետպլանի, պետմատի և մեքենաշինական մինիստրությունների կողմից։*

*էկոնոմիկայի զարգացման, նոր կարողությունների ստեղծման, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության համար մենք հսկայական միջոցներ ենք հատկացնում։ Դրանց արդյունավետ օգտագործումը բացառիկ կարևորություն ունեցող խնդիր է։ Եվ, այնուամենայնիվ, կապիտալ շինարարության ոլորտում մնում են ոչ քիչ պրոբլեմներ։ Հարկավոր է է՛լ ավելի վճռականորեն պայքարել ուժերն ու միջոցները բազմաթիվ օբյեկտների վրա փոշիացնելու դեմ։ Ավելացնել վերակառուցման և արդիականացման բաժինը, կրճատել նոր կառույցների թիվը։ Մեզ շատ բանով չի գոհացնում նաև բուն շինարարական գործի կազմակերպումը։ Այստեղ առկա թերությունները տարեցտարի հանգեցնում են կարողությունների գործարկման պլանները չկատարելուն։ Մի շարք շինարարական մինիստրություններ նվազեցնում են շինմոնտաժային աշխատանքների ծավալները, թեև կառավարությունը այդ մինիստրությունների նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար հատկացնում է նշանակալի ֆինանսական ռեսուրսներ, մեքենաներ ու սարքավորումներ։ Շատ դեպքերում ցածր է մնում շինմոնտաժային աշխատանքների որակը։ Անբավարար է շինարարական կազմակերպությունների շարժունակությունը։*

*Այդ թերությունների վերացման նպատակով քիչ որոշումներ չեն ընդունվել։ Դրանք պետք է կատարել։ Կապիտալ շինարարության մեջ կարգուկանոնի հաստատումը ժողովրդատնտեսական կենտրոնական խնդիրներից մեկն է։*

*Այսօր չեմ անդրադառնա տնտեսության մյուս ոլորտներին և ճյուղերին։ Դրանք բոլորն էլ կարևոր են մեր հասարակության, մեր ժողովրդի համար։ Եվ յուրաքանչյուր մինիստրություն ու գերատեսչություն պետք է ամենաուշադիր կերպով դարձյալ ու դարձյալ վերլուծի իրավիճակը, նախատեսի և իրականացնի միջոցառումներ եղած պրոբլեմների լուծման համար։ Այն գլխավոր չափանիշը, որով նրանք պետք է գնահատեն իրենց աշխատանքը, ճյուղի կողմից հասարակական հարաճուն պահանջմունքների բավարարման աստիճանն է։*

*էկոնոմիկայի անշեղ վերելքը, ժողովրդի բարեկեցության բարելավումը թե՛ մեր պարտքն է սովետական ժողովրդի հանդեպ, թե՛ մեր ինտերնացիոնալ պարտքը։ Հարցը այս կերպ դնելով, կուսակցությունն առաջնորդվում է Լենինի այն խորաթափանց ցուցումով, թե համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա մեր գլխավոր ներգործությունը մենք անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ։*

*Ընկերնե՛ր։*

*Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի մահը արտասահմանում ոչ քիչ ենթադրություններ առաջացրեց միջազգային գործերում ՍՄԿԿ-ի և սովետական պետության ապագա կուրսի վերաբերյալ։ Դուք միայն պատկերացրեք, թե վերջին տարիներս ինչքան փորձեր են արվել Սովետական Միությանը վերագրելու հնարավոր ամեն տեսակ չարագույժ դիտավորություններ, մեր քաղաքականությունը պատկերելու որպես մերթ մեկ, մերթ մյուս պետության անվտանգությանը սպառնացող ագրեսիվ քաղաքականություն։ Իսկ հիմա, բանից դուրս է գալիս, տագնապում են, որ այդ քաղաքականությունը չփոխվի։ Դրա պահպանումը համարում են միջազգային ասպարեզում խաղաղության և անդորրության կարևոր նախադրյալ։*

*Ամենայն պատասխանատվությամբ պետք է ասեմ. սովետական արտաքին քաղաքականությունը եղել է ու կմնա այնպիսին, ինչպես որ սահմանված է մեր կուսակցության XXIV, XXV և XXVI համագումարների որոշումներով։ Կայուն խաղաղության ապահովումը, ժողովուրդների անկախության և սոցիալական պրոգրեսի իրավունքի պաշտպանությունը մեր արտաքին քաղաքականության անփոփոխ նպատակներն են։ Այդ նպատակների համար մղվող պայքարում կուսակցության և պետության ղեկավարությունը կգործի սկզբունքորեն, հետևողականորեն և կշռադատված կերպով։ (Ծափահարություններ):*

*Մենք գտնում ենք, որ այսօրվա միջազգային իրադրության համար բնորոշ դժվարությունները և լարվածությունը կարող են ու պետք է հաղթահարվեն։ Մարդկությունը չի կարող անվերջ հաշտվել սպառազինությունների մրցավազքի և պատերազմների հետ, եթե չի ուզում խաղաքարտի վրա դնել իր ապագան։ ՍՄԿԿ-ն դեմ է այն բանին, որ գաղափարների վեճը վերածվի պետությունների ու ժողովուրդների միջև առճակատման, որ հասարակական սիստեմների կա-*

բողությունների չափանիշ դառնան զենքը և դրան դիմելու պատրաստակամությունը։

Իմպերիալիզմի ագրեսիվ զավերը մեզ ստիպում են եղբայրական սոցիալիստական պետությունների հետ միասին հոգ տանել, և լրջորեն հոգ տանել պաշտպանունակությունը պատշաճ մակարդակի վրա պահելու մասին։ Բայց, ինչպես բազմիցս շեշտել է Լեոնիդ Իլյիչը, ռազմական մրցակցությունը մենք չէ, որ ընտրել ենք։ Աշխարհն առանց զենքի՝ ահա սոցիալիզմի իդեալը։

Մեր կուսակցության առաջնահերթ հոգածության առարկան այսուհետև էլ կլինի սոցիալիստական ընկերակցության ամրապնդումը։ Միասնությունն է մեր ուժը, նույնիսկ ամենալուրջ փորձությունների մեջ վերջնական հաջողության գրավականը։

Սոցիալիստական պետությունների ընկերակցության բոլոր պլանները խաղաղության և ստեղծարար աշխատանքի պլաններ են։ Մենք ձգտում ենք այն բանին, որ եղբայրական երկրների ընկերական համագործակցությունը և սոցիալիստական փոխօգնությունը ավելի խոր և ավելի արդյունավետ դառնան, այդ թվում նաև գիտատեխնիկական, արտադրական, տրանսպորտային, էներգետիկ և մյուս խնդիրների համատեղ լուծման բնագավառում։

ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը անկեղծորեն ուզում են զարգացնել ու բարելավել հարաբերությունները բոլոր սոցիալիստական երկրների հետ։ Փոխըմբռնողակամությունը, միմյանց օրինական շահերը հարգելը, սոցիալիզմի և խաղաղության շահերի նկատմամբ ընդհանուր հոգատարությունը պետք է ճիշտ լուծումներ հուշեն նաև այնտեղ, որտեղ տարբեր պատճառներով դեռ չկա անհրաժեշտ վստահություն ու փոխըմբռնում։ Դա վերաբերում է նաև մեր մեծ հարևանին՝ Չինական Ժողովրդական Հանրապետությանը։ Տաշքենդում և Բաքվում իր ունեցած ելույթներում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ձևակերպած գաղափարները, նրա կողմից շեշտը ողջախոհության վրա, նախապաշարումների իներցիայի հաղթահարման անհրաժեշտության վրա դնելը արտահայտեցին մեր ամբողջ կուսակցության համոզմունքը, առաջ նայելու նրա ձգտումը։ Եվ մենք մեծ ուշադրությամբ ենք վերաբերվում այդ առթիվ չինական կողմի ամեն մի դրական արձագանքին։

Միջազգային կյանքում մեծանում է չմիանալու շարժումն ստեղծած պետությունների խմբի նշանակությունը։ Նրանցից շատերի հետ Սովետական Միությունն ունի բազմակողմանի բարեկամական կապեր, որոնք օգուտ են տալիս երկու կողմերին և նպաստում աշխարհում ավելի մեծ կայունության ստեղծմանը։ Դրա օրինակն են ՍՍՀՄ-ի հարաբերությունները Հնդկաստանի հետ։ Գաղութային լծից ազատագրված պետությունների, իրենց անկախությունը պաշտպանող ժողովուրդների հետ համերաշխությունը եղել է ու մնում է սովետական արտաքին քաղաքականության հիմնարար սկզբունքներից մեկը։

Սովետական իշխանության առաջին օրվանից մեր պետությունը անշեղորեն պատրաստակամություն է արտահայտում անկեղծորեն, ազնվորեն համագործակցելու այն բոլոր երկրների հետ, որոնք պատասխանում են փոխադարձությամբ։ Հասարակական սիստեմների միջև եղած տարբերությունները չպիտի խանգարեն դրան, և չեն խանգարում այնտեղ, որտեղ առկա է երկու կողմերի բարի կամքը։ Դրա համոզիչ հավաստումը Արևմտյան Եվրոպայի շատ երկրների հետ ՍՍՀՄ-ի խաղաղ համագործակցության զարգացման ասպարեզում նկատելի առաջընթացն է։

Մեր խորին համոզմամբ, 70-ական թվականները, որոնք անցան լարվածության թուլացման նշանաբանով, պատահական դրվագ չէին մարդկության դժվարին պատմության մեջ, ինչպես այսօր պնդում են իմպերիալիստական որոշ գործիչներ։ Ո՛չ, լարվածության թուլացման քաղաքականությունը ամենևին էլ անցած փուլ չէ։ Նրան է պատկանում ապագան։ (Ծափահարություններ):

Խաղաղության պահպանմամբ և լարվածության թուլացմամբ հավասարապես շահագրգռված են ամենքը։ Ուստի առնվազն անլուրջ են հնչում այն հայտարարությունները, որոնցում հարաբերությունների նորմալացման պատրաստակամությունը կապվում է այն պահանջի հետ, որ Սովետական Միու-



թյունը դրա դիմաց նախապես ինչ-որ զիջումներ անի ամենատարբեր բնագավառներում։ Այդ բանին մենք չենք դիմի։ (Ծափահարություններ): Իսկն ասած. մենք չեղյալ հայտարարելու բան էլ չունենք. մենք ոչ մեկի դեմ սանկցիաներ չենք մտցրել, ստորագրված պայմանագրերից ու համաձայնագրերից չենք հրաժարվել, սկսած բանակցությունները չենք ընդհատել։ Մեկ անգամ ևս ուզում եմ շեշտել՝ Սովետական Միությունը կողմնակից է համաձայնության, բայց այն հարկավոր է փնտրել փոխադարձության և իրավահավասարության հիման վրա։ (Ծափահարություններ):

ԱՄՆ-ի և մյուս արևմտյան երկրների հետ բանակցությունների, առաջին հերթին սպառազինությունների մրցավազքի կասեցման հարցերի շուրջը վարվող բանակցությունների իմաստը մենք տարաձայնությունների արձանագրման մեջ չենք տեսնում։ Մեզ համար բանակցությունները տարբեր պետությունների ջանքերի միավորման միջոց են՝ հանուն բոլոր կողմերի համար օգտակար արդյունքների ձեռքբերման։ Պրոբլեմները իրենք իրենց չեն անհետանա, եթե բանակցությունները վարվեն հանուն բանակցությունների, ինչպես որ, ցավոք, հաճախ է պատահում։ Մենք ամենաբարդ պրոբլեմների և առաջին հերթին, իհարկե, թե՛ միջուկային և թե սովորական սպառազինությունների մրցավազքի սանձահարման պրոբլեմների լուծման առողջ, կողմերի համար ընդունելի հիմք գտնելու կողմնակից ենք։ Բայց ոչ ոք թող մեզանից միակողմանի զինաթափում չսպասի։ Մենք միամիտ մարդիկ չենք։ (Ծափահարություններ):

Մենք Արևմուտքի միակողմանի զինաթափում չենք պահանջում։ Մենք իրավահավասարության, երկու կողմերի շահերը հաշվի առնելու, ազնիվ համաձայնության կողմնակից ենք։ Մենք պատրաստ ենք դրան։ (Ծափահարություններ):

Ինչ վերաբերում է մասնավորապես ստրատեգիական միջուկային զենքին, որ ունեն ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը, ապա Սովետական Միությունը, ինչպես հայտնի է, համաձայն է այն բանին, որ որպես ապագա համաձայնության ճանապարհին առաջին քայլ, երկու կողմերը «սառեցնեն» իրենց զինանոցները և դրանով իսկ ավելի բարենպաստ պայմաններ ստեղծեն այդ զենքի փոխադարձ կրճատման շուրջը բանակցությունները շարունակելու համար։

ՍՍՀՄ-ը ընդհանրապես մերժում է նրանց տեսակետը, ովքեր փորձում են մարդկանց ներշնչել, թե իբր ուժն ու զենքն են վճռում ու միշտ կվճռեն ամեն ինչ։ Ներկայումս, ինչպես երբեք նախկինում, պատմության նախաբեմ են դուրս գալիս ժողովուրդները։ Նրանք ձեռք են բերել ձայնի իրավունք, որը ոչ ոք չի կարող խլացնել։ Նրանք ընդունակ են ակտիվ և նպատակասլաց գործողություններով վերացնելու միջուկային պատերազմի սպառնալիքը, պահպանելու խաղաղությունը, ուրեմն նաև կյանքը մեր մոլորակի վրա։ Եվ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը ամեն ինչ կանեն, որ դա հենց այդպես էլ լինի։

ՍՄԿԿ XXVI համագումարը կոնկրետացրեց կուսակցության երկարաժամկետ ստրատեգիան տասնմեկերորդ հնգամյակի ժամանակաշրջանի և, ամբողջությամբ վերցրած, 80-ական թվականների համար։ Այդ ստրատեգիան նպատակամղված է այն բանին, որ սովետական մարդիկ տարեցտարի ավելի ու ավելի լավ ապրեն և որ նրանց աշխատանքը ավելի ու ավելի ծանրակշիռ արդյունքներ բերի, որ մեր սոցիալիստական հասարակարգը ավելի ու ավելի լրիվ բացահայտի իր մարդասիրական էությունը, իր ստեղծարար հնարավորությունները։

Տնտեսական ու սոցիալական առաջադիմության բոլոր բնագավառներում խոշոր և զգալի չափով նոր խնդիրներ են առաջադրված։ Հաջողությունը, իհարկե, կախված է շատ գործոններից և ամենից առաջ Կենտկոմի նպատակասլաց կոլեկտիվ աշխատանքից, կուսակցական, պետական, տնտեսական մարմինների, բոլոր աշխատավորական կոլեկտիվների գործունեությունը հիմնական ուղղություններում կենտրոնացնելու մեր և ձեր կարողությունից։

Հարկավոր է մոբիլիզացնել մեր տրամադրության տակ եղած բոլոր միջոցները, ծավալել 1983 թվականի պլանի առաջադրանքների լայն պրոպագան-

*դումն ու պարզաբանումը։ Դրանք պետք է կոնկրետացվեն՝ ելնելով յուրաքանչյուր ձեռնարկության, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի խնդիրներից։ Սա՝ առաջին։*

*Երկրորդ, հարկավոր է ճիշտ տեղաբաշխել կադրերը, որպեսզի վճռական տեղամասերում կանգնած լինեն քաղաքականապես հասուն, իրազեկ, նախաձեռնող, կազմակերպչական ընդունակություններով և նորի զգացումով օժտված մարդիկ, առանց որի մեր ժամանակներում չի կարելի հաջողությամբ ղեկավարել ժամանակակից արտադրությունը։* (Ծափահարություններ):

*Երրորդ, անհրաժեշտ է բարձրացնել բուն աշխատավոր մասսաների ակտիվությունը։ Դա այսօր կուսակցական կոմիտեների, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների կարևորագույն խնդիրն է։ Կուսակցության գաղափարները, պլանները, կոչերը, ինչպես հայտնի է, նյութական ուժ են դառնում, երբ տիրապետում են մասսաներին։ Այժմ հատկապես կարևոր է ու հարկավոր, որ յուրաքանչյուր աշխատավոր հասկանա, որ պլանի կատարումը կախված է նաև իր աշխատանքային ներդրումից, որ ամենքը լավ հասկանան այն պարզ ճշմարտությունը, թե որքան մենք լավ աշխատենք, այնքան լավ կապրենք։ Ինչպես ընդգծել է Լենինը, «որքան լայն է մեր պլանների, մեր արտադրական խնդիրների մասշտաբը, այնքան ավելի շատ պիտի լինեն մարդիկ, որոնց միլիոններով պետք է ներգրավել այդ խնդիրների լուծմանն ինքնուրույն կերպով մասնակցելու համար»։*

*Իսկ դա նշանակում է, որ անհրաժեշտ է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացում՝ դրա ամենալայն իմաստով, այսինքն՝ աշխատավոր մասսաների ավելի ու ավելի ակտիվ մասնակցություն պետական ու հասարակական գործերի կառավարմանը։ Եվ, իհարկե, այստեղ հարկ չկա ապացուցելու, թե որքան կարևոր է հոգ տանել աշխատողների կարիքների մասին, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների մասին։*

*Մենք միշտ և անշեղորեն հավատարիմ կլինենք կուսակցության և պետության կյանքում ամուր հաստատված լենինյան նորմերին և սկզբունքներին։* (Ծափահարություններ):

*Ընկերնե՛ր։ Առջևում մեզ հսկայական, բարդ խնդիրներ են սպասում։ Բայց դրանք մատչելի են մեր կուսակցության համար։*

*Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին վերջին հրաժեշտը տալու օրերը վերստին ամբողջ աշխարհին ցույց տվեցին, որ մեր կոմունիստական կուսակցությունը և սովետական ժողովուրդը անբաժան են, որ նրանք ապրում են լենինյան ուղիով հաստատ ու աներեր առաջ ընթանալու միասնական ձգտումով։*

*Սովետական մարդիկ կրկին ցուցադրեցին իրենց անսահման նվիրվածությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, խորին հարգանքն ու սերը հարազատ կուսակցության նկատմամբ, կազմակերպվածությունը, տոկունությունը, վստահությունն իրենց ուժերի հանդեպ։*

*Մենք ընթանում ենք դեպի մեր բազմազգ սոցիալիստական պետության պատմության կարևոր իրադարձությունը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման 60-ամյակը։ Այս օրերին սովետական մարդիկ իրենց լավագույն խոհերը ուղղում են մեր լենինյան կուսակցությանը, որը կանգնած է եղել ՍՍՀՄ-ի ստեղծման ակունքների մոտ և իմաստուն կերպով մեր երկրի ժողովուրդներին առաջնորդում է կոմունիզմի կառուցման ուղիով։*

*Ամրապնդել կուսակցության և ժողովրդի միասնությունը, հաստատակամորեն հետևել մեծ Լենինի պատգամներին՝ այս է մեր գալիք բոլոր հաղթանակների գրավականը։* (Երկարատև ծափահարություններ):

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1982 թվականի դեկտեմբերի 1-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումի արդյունքների և պլենումի որոշումներից ու պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի ճառից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը։

Զեկուցմամբ հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ։

Պլենումը լսեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահ ընկ. Հ. Ս. ՍԱՂՈՅԱՆԻ զեկուցումը «Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1983 թվականի պետական պլանի մասին և Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1982 թվականի պետական պլանի կատարման ընթացքի մասին» և Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստր ընկ. Զ. Ա. ՋԱՆՈՅԱՆԻ զեկուցումը «Հայկական ՍՍՀ 1983 թվականի պետական բյուջեի մասին և 1981 թվականի պետական բյուջեի կատարման մասին»։

Զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար Հ. Ա. ՕՀԱՆՅԱՆԸ, ժողովրդական դեպուտատների Լենինականի քաղաքային սովետի գործկոմի նախագահ Է. Մ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար Ռ. Ս. ՂՈՆՅԱՆԸ, «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման փականագործ-գործիքագործ Ս. Ս. ՖԱՀՐԱԴՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ ավտոմոբիլային տրանսպորտի մինիստր Խ. Ա. ԴՐԱՄՓՅԱՆԸ, Ազիզբեկովի շրջանի Կեչուտի սովխոզի կթվորների բրիգադավար Վ. Ա. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԸ, «Երարդշին» տրեստի կառավարիչ Լ. Կ. ՇԱՀԲԱԶՅԱՆԸ, Էջմիածնի շրջանի Արավենատուն գյուղի կոլտնտեսության գլխավոր գյուղատնտես Ռ. Վ. ԱՎԱԳՅԱՆԸ, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի դիրեկտոր Ն. Ս. ՍԱՐԳՍՅԱՆԸ, Արարատի շրջանի Ա. Խանջյանի անվան կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆԸ։

Քննարկված հարցերի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ։

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ։

Դրանով ավարտվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը։

# ԲՈԼՈՐ ՈՒԺԵՐԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՅՍՕՐՎԱ ԱՌԱՋԱԴՐԱԾ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԼՈՒԾՄԱՆԸ

## Ընկեր Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ զեկուցումը

*ՍՄԿԿ Կենտկոմի օրերս կայացած պլենումը, ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, քննարկեց և հիմնականում հավանություն տվեց ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1983 թվականի պետական պլանի և պետական բյուջեի նախագծերին, որոնք այնուհետև հաստատվեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից:*

*Պլենումում նշվեց, որ մեր երկիրը նոր բնագծեր է նվաճել տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման բնագավառում:*

*Պլենումում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը: Նրա ընդարձակ ու բովանդակալից ճառում ձեռք բերված մեծ հաջողությունների գնահատականի հետ մեկտեղ տրված է երկրի էկոնոմիկայի վիճակի խոր վերլուծությունը, բացահայտված են ժողովրդական տնտեսության զարգացման մեջ տեղ գտած դժվարություններն ու թերությունները, ցույց են տրված դրանց հաղթահարման ուղիներն ու միջոցները, առաջադրված են արտադրության հետագա ինտենսիվացման, դրա արդյունավետության բարձրացման, կապիտալ շինարարության զգալի բարելավման, կառավարման ու պլանավորման կատարելագործման, խնայողության ռեժիմի ուժեղացման, պետական, աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդման հիմնական խնդիրները:*

*Շեշտվեց, որ հոգատարությունը սովետական մարդու, նրա աշխատանքի ու կենցաղի, նրա հոգևոր զարգացման մասին մնում է կուսակցության կարևորագույն ծրագրային հիմնադրույթը:*

*Պլենումն ամբողջովին ու լիովին հավանություն տվեց ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության XXVI համագումարի մշակած կուրսի կենսագործման, կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման ասպարեզում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի պրակտիկ գործունեությանը: Պլենումը հավանություն տվեց ընկ. Յու. Վ. Անդրոպովի ճառում շարադրված դրույթներին ու եզրահանգումներին և որոշեց դրանք դարձնել բոլոր կուսակցական կազմակերպությունների գործունեության հիմքը:*

*ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները կուսակցությանը, երկրի բոլոր աշխատավորներին զինում են գործողությունների հստակ ծրագրով, մոբիլիզացնում նրանց սովետական հասարակության հետագա զարգացման խնդիրների լուծման, երկրի էկոնոմիկայի աճի տեմպերի արագացման, մեր մեծ հայրենիքի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման ու գերակատարման համար:*

*Տասնմեկերորդ հնգամյակի առաջին երկու տարվա նախնական արդյունքները ցույց են տալիս, որ հանրապետության աշխատավորները ևս, կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ, նշանակալի հաջողությունների են հասել սոցիալ-տնտեսական զարգացման առաջադրանքների կատարման*

* *Տպագրվում է համառոտումներով:*



*ասպարեզում, ապահովել են ժողովրդական տնտեսության կայուն ու դինամիկ զարգացումը:*

*Հնգամյա պլանին համապատասխան ապահովվում է ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերի աճը: Համախառն հանրային արդյունքը երկու տարում կաճի 11,1 տոկոսով, պլանով նախատեսված 9,8 տոկոսի փոխարեն: Ազգային եկամուտը՝ 12,1 տոկոսով՝ հնգամյակի առաջադրանքով նախատեսված 11,1 տոկոսի փոխարեն: Արդյունաբերական արտադրության ծավալը կաճի մոտ 12 տոկոսով, հնգամյա պլանի առաջադրանքով նախատեսված 10,5 տոկոսի փոխարեն:*

*Ամբողջությամբ վերցրած վատ չեն հանրապետության գյուղատնտեսության ցուցանիշները: Կատարվում ու գերակատարվում են հիմնական բուսաբուծական և անասնապահական մթերքների պետական գնումների պլանները: Տասնմեկերորդ հնգամյակի երկու տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքի արտադրության ծավալը միջին հաշվով կաճի 10 տոկոսով՝ հնգամյա պլանի առաջադրանքով նախատեսված 3,9 տոկոսի փոխարեն:*

*Ապահովվում է նաև ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառության և կապի արտադրանքի ծավալի հնգամյա պլանով նախատեսված աճը: Իրականացվում է խոշոր ծավալների կապիտալ շինարարություն: Հետևողականորեն կենսագործվում է սոցիալական զարգացման ծրագիրը:*

*Շահագործման են հանձնվել զգալի մակերեսով բնակելի տներ, դպրոցներ, նախադպրոցական հիմնարկություններ և այլն: Կապահովվի բանվորների և ծառայողների ամսական միջին աշխատավարձի, սպառման հանրային ֆոնդերից տրվող վճարումների ու արտոնությունների ավելացումը: Էապես կաճի բնակչությանը ցույց տրվող կենցաղային սպասարկումների ծավալը:*

*Հաջողություններն ակնհայտ են: Դրանք ձեռք են բերված սոցիալիստական մրցության լայն ծավալման շնորհիվ, և այդ հաջողություններով էլ մեր հանրապետության աշխատավորները դիմավորում են երկրի նշանակալի հոբելյանը՝ ՍՍՀՄ կազմավորման 60-ամյակը:*

*Սակայն դա բնավ չի նշանակում, թե մենք պետք է հանգստանանք ձեռք բերածով և չտեսնենք մեր աշխատանքում եղած դժվարություններն ու թերությունները:*

*Առաջին հերթին դա վերաբերում է արդյունաբերական արտադրության ծավալի աճի տեմպերին: Տասներորդ հնգամյակում ողջ արդյունաբերական արտադրության ծավալն աճեց 46 տոկոսով, տարեկան միջին աճի տեմպը կազմեց 7,8 տոկոս: Ցավոք, հենց 11-րդ հնգամյակի առաջին տարում պետպլանը (ընկ. Հ. Սաղոյան) չկարողացավ հասնել այն բանին, որպեսզի արտադրության ծավալների աճի պլանավորված տեմպերը լինեին բարձր: Որոշվեց այդ կոմպենսացնել պլանների գերակատարումով: Նույն բանը տեղի ունեցավ նաև 1982 թվականին:*

*Ինչո՞ւ այդպես եղավ: Որո՞նք են արդյունաբերական արտադրության տեմպերի նվազման հիմնական պատճառները: Հանրապետության արդյունաբերության կառուցվածքի բարելավման նպատակով կատարվող աշխատանքները, որոնք հանգեցնում են մեծ ծավալների նյութատար, էներգատար արտադրությունների կրճատման և սահմանափակման, ինչպես նաև վերջին տարիներին բնության պահպանության միջոցառումների գործադրմամբ թելադրված արտադրությունների նվազեցումն ու փակումը, բնականաբար ազդեցին աճի տեմպերի վրա:*

*Բայց այս ամենը բնավ էլ անսպասելի չէր:*

*Դեռևս Հայաստանի կոմկուսի XXVI, ինչպես և XXVII համագումարները վերցրին արդյունաբերության կառուցվածքի բարելավման, ինչպես նաև բնապաշտպանական կուրս, դրանից բխող բոլոր վերոհիշյալ հետևանքներով և հանձնարարականներով հանդերձ: Թե՛ միութենական արդյունաբերական ձեռնարկությունները, թե՛ մինիստրությունները, գերատեսչություններն ու պետպլանը ժամանակին պետք է մտահոգվեին այդ կուրսով թելադրված փակվող, կրճատվող կամ սահմանափակվող արտադրությունները ուրիշներով փոխարի-*

ցիաներ և այլն։ Միայն Հայպետառևտտեսչությունը ընթացիկ տարվա ինն ամսում արդյունաբերական ձեռնարկություններին ներկայացրել է տնտեսական սանկցիաներ 3,3 միլիոն ռուբլի գումարով, այն հանելով իրացման պլանի կատարման հաշվետվություններից։

Չի կարելի բավարար համարել նաև աշխատանքի արտադրողականության ցուցանիշները։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման արդյունաբերության մեջ եղած հնարավորությունները բնավ էլ լրիվ չեն օգտագործվում։ Այդ է վկայում նախ և առաջ ձեռնարկությունների կողմից աշխատանքի արտադրողականության պլանները չկատարելը։ Պետք է նշել, որ մի շարք մինիստրությունների, գերատեսչությունների և միավորումների ղեկավարներ անբավարար են զբաղվում այդ կարևոր հարցով։ Յուրաքանչյուր ձեռնարկությունում աշխատանքի արտադրողականության առաջադրանքների կատարումն ապահովելու փոխարեն, նրանք հաճախ բավարարվում են ամբողջությամբ վերցրած մինիստրության կամ միավորման միջին ցուցանիշներով, պատշաճ միջոցներ չձեռնարկելով ետ մնացող ձեռնարկություններն առաջավորների մակարդակին հասցնելու համար։ Իսկ չէ՞ որ միավորումներն ստեղծվել են ոչ նրա համար, որ ոմանց վատ աշխատանքը քողարկվի մյուսների թիկունքում։

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ խզում գոյություն ունի հիմնական և օժանդակ աշխատանքների մեքենայացման և ավտոմատացման մակարդակի միջև։ Օժանդակ պրոցեսների կատարելագործմանը անբավարար ուշադրություն է նվիրվում։ Անհրաժեշտ է վճռական միջոցներ ձեռնարկել ձեռքի աշխատանքի վերացման՝ հանրապետությունում կոմպլեքսային նպատակային ծրագրի մշակման և իրականացման բնագավառում։ Այստեղ շատ անելիքներ ունեն ոչ միայն արդյունաբերության աշխատողները, այլև հանրապետության համապատասխան գիտական ստորաբաժանումների կոլեկտիվները։

Ընկերնե՛ր։ Հանրապետությունում շարունակվում է անբարեհաջող մնալ կապիտալ շինարարության վիճակը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։ Ձախողվում են հիմնական ֆոնդերի գործարկման պլանները, չի ապահովվում հատկացված կապիտալ ներդրումների իրացումը։ Անցած 10 ամսում չեն իրացվել 109 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, այդ թվում 50 միլիոն ռուբլու՝ շինմոնտաժային աշխատանքների գծով։ Թույլ տվեք, ընկերներ Հ. Հայրապետյանին, Է. Ավագյանին, Գ. Թադևոսյանին, հանրապետության կապիտալ շինարարության մյուս ղեկավար ընկերներին հարցնել, թե միջոցների սղության պայմաններում, թույլատրելի՞ է, արդյոք, այդպես դյուրությամբ կորցնել հատկացվածը։

Ջայրացուցիչ, կարելի է ասել, անհոգի վերաբերմունք է ցուցաբերվում հիվանդանոցների, մանկապարտեզների և սոցիալական նշանակության այլ օբյեկտների շինարարության նկատմամբ։ Ամենքին հայտնի է, թե ինչպես, ընդառաջելով մեր խնդրանքին, 25 միլիոն ռուբլով ավելացվեցին առողջապահության զարգացման նպատակով հատկացվող կապիտալ ներդրումները։ Իսկ ինչպե՞ս ենք մենք օգտագործում դրանք։ Ընթացիկ տարվա տասն ամսում օգտագործել ենք տարեկան լիմիտի միայն 57,7 տոկոսը։ Իսկ երկու տարում չենք իրացնի 11 միլիոն ռուբլի, այսինքն՝ խնդրած գումարի մոտավորապես կեսը։ Հանրապետության համար խոշոր օբյեկտի, Լենինականի հիվանդանոցի շինարարության կապիտալ ներդրումների տասն ամսվա պլանը կատարվել է 58,1 տոկոսով, իսկ շինմոնտաժային աշխատանքներինը՝ 56 տոկոսով։ Կամ ի՞նչ բարդ օբյեկտներ են մանկապարտեզները, որ տասն ամսում շահագործման է հանձնվել տարեկան պլանի միայն 43,4 տոկոսը, իսկ կապիտալ ներդրումների լիմիտը օգտագործվել է 61,7 տոկոսով։

Մեր շատ ընկերներ, այդ թվում, իհարկե, նաև շինարարները, սիրում են խոսել բնության պահպանության, շրջակա միջավայրի աղտոտման և այլ բարձր թեմաների մասին։ Բազմաթիվ լուրջ որոշումներ են ընդունվել այդ հարցի վերաբերյալ։ Բայց այստեղ նույնպես գործը խոսքից լրիվ տարբերվում է։ Տարվա համար սահմանված կապիտալ ներդրումները տասն ամսում օգտագործվել են միայն 60,2 տոկոսով, իսկ այն մինիստրությունների ու գերա-



տեսչությունների գծով, որոնց կապիտալ ներդրումներ է հատկացնում հանրապետության Մինիստրների խորհուրդը՝ 50,9 տոկոսով։

Ստեղծված ծանր դրության հիմնական մեղավորները մեր գլխավոր կապալային կազմակերպություններն են, որոնց ղեկավարները, ըստ երևույթին, մոռացել են կուսակցության, ժողովրդի առջև ունեցած պատասխանատվության մասին։ Արդյունաբերական շինարարության մինիստրությունը կապալային աշխատանքների տասն ամսվա պլանը կատարել է 95,2 տոկոսով, իսկ նրա մի քանի տրեստներ՝ դրանից էլ պակաս։ Իսկ այնպիսի միութենական կազմակերպություններ, ինչպիսիք են «Հայհիդրոէներգոշինը»՝ 89,3, «Հայտրանսշինը»՝ 88 տոկոսով։

Այս գործում մեղքի մեծ բաժին ունեն նաև պատվիրատու մինիստրությունները, գերատեսչությունները և ձեռնարկությունները, որոնք իրենց պարտականությունները խիստ անբավարար են կատարում։

Շինարարության տեմպերի և որակի վրա բացասաբար է ազդում տարվա ընթացքում գործարկման անհավասարաչափ պլանավորումը, որը, ցավոք, դեռևս շարունակվում է պետպլանի թեթև ձեռքով (ընկ. Մ. Ալահվերդյան)։ 1982 թվականին, օրինակ, հիմնական ֆոնդերի գործարկման պլանի մեծ մասը նախատեսված է չորրորդ եռամսյակի համար։

Բազմիցս նշվել է նախագծերի, հատկապես մասսայական-տիպային նախագծերի որակի բարձրացման անհրաժեշտությունը։ Սակայն պետշինը (ընկ. Կ. Մարության) շարունակում է պասիվ դիրք գրավել այս հարցերում, և դա չափազանց բացասաբար է ազդում կապիտալ շինարարության վիճակի վրա։

Մի խոսքով, ընկերնե՛ր, հանրապետությունում կապիտալ շինարարության վիճակը պետք է քննարկվի կոմպլեքսայնորեն և ձեռնարկվեն ամենալուրջ և վճռական միջոցները։

Տրանսպորտայինների աշխատանքով, ինչպես հայտնի է, մեծապես պայմանավորված է ամբողջ ժողովրդական տնտեսության նորմալ գործունեությունը։ Ընդհանուր առմամբ, հանրապետությունում տրանսպորտի աշխատանքը բավարար է ընթանում։ 1982 թվականի հիմնական պլանային ցուցանիշները կատարվում են։ Բայց քիչ չեն նաև թերությունները։

Եվ դրանցից ամենակարևորը բեռնման և բեռնաթափման աշխատանքների անբավարար վիճակն է։ Վագոնների միջին օրական բեռնաթափման պլանը շարունակում է ձախողվել և 10 ամիսներին այն կատարվել է ընդամենը 93,3 տոկոսով։ Նորմայից ավելի պարապուրդներն անցնում են 1 միլիոն վագոն-ժամից, որի համար ձեռնարկություններն ու կազմակերպությունները տուգանվել են մոտ 2 միլիոն ռուբլի գումարով։ Բեռնման և բեռնաթափման գործողություններում սիստեմատիկաբար վագոնները նորմայից ավելի շատ են պահում Չարենցավանի «Ցենտրոլիտ» գործարանը, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը, «Հայծխախոտարդ» արտադրամիավորումը, «Սևան» հանքային ջրերի գործարանը, Երևանի ավտոդողերի գործարանը, Մասիսի տրանսպորտային տնտեսության միավորումը և այլն։

Հարկ է հարցնել համապատասխան կուսակցական մարմիններից, ինչո՞ւ այդ ձեռնարկությունների ղեկավարները պատշաճ կուսակցական պատասխանատվություն չեն կրում գործերի նման կացության համար։

Լուրջ բարելավում են պահանջում փոխադրումների պլանավորման հարցերը։ Հաճախ տրանսպորտային միջոցներ տրամադրելու պահանջագրեր են տրվում առանց բավարար հիմնավորման։ Այսպես, օրինակ, այս տարի միութենական ֆոնդին դեղձ և խաղող մատակարարելու գործում դժվարություններ առաջացան միայն այն պատճառով, որ պտուղ-բանջարեղենի տնտեսության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Ս. Առաքելյան) ռեֆրիժերատորների սեկցիաներ ստանալու հայտը ներկայացրել էր անհրաժեշտ քանակից շատ ավելի պակաս։

Մյուս կողմից շարժակազմի պակասի պատճառով երկաթգիծը միշտ չէ, որ կարողանում է փոխադրամիջոցներով լրիվ բավարարել ձեռնարկությունների և կազմակերպությունների պահանջարկը։

Թերություններ կան նաև ավտոմոբիլային տրանսպորտի և կապի աշխա-

Հանրապետությունում մեկ կովի կաթնատվությունը վերջին տարիներս մշտապես աճում է։ Դա մեծապես բացատրվում է նաև կերի բաղայի ամրապնդման նպատակով ձեռնարկված միջոցառումներով։ Սակայն ընթացիկ տարում, երբ կերով բավարար ապահովվածություն կա, շրջանային կուսակցական ու սովետական մարմինների ցածր պահանջկոտության և հետևողականության բացակայության պատճառով 11 շրջաններում մեկ կովի կաթնատվությունը, 1981 թվականի համեմատությամբ, նվազել է, այդ թվում Անիի շրջանում՝ 89 կիլոգրամով, Մեղրու շրջանում՝ 69, Ստեփանավանի շրջանում՝ 50, Գորիսի շրջանում՝ 45, Նոյեմբերյանի շրջանում՝ 33 կիլոգրամով և այլն։

Ցածր կարգապահությունից ու անպատասխանատվությունից, հսկողության բացակայությունից և անհետևողականությունից բացի ինչո՞վ պետք է բացատրեն այս աղաղակող փաստերը կուսակցության համապատասխան շրջանային կոմիտեների քարտուղարներ ընկ. ընկ. Ս. Նազարյանը, Թ. Դիլանյանը, Վ. Բալայանը, Ռ. Խաչատրյանը և Ս. Պետրոսյանը։

Մի շարք շրջաններում անբավարար է կատարվում կովերի գլխաքանակն ավելացնելու վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հանրապետության Մինիստրների խորհրդի որոշումը։ Աբովյանի, Անիի, Աշտարակի, Գորիսի, Ղափանի, Մասիսի, Մեղրու, Սպիտակի և Թումանյանի շրջանների կոլտնտեսություններում ու սովխոզներում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, կովերի գլխաքանակը նույնիսկ կրճատվել է։

Ներկա պլենումը պետք է պահանջի հանրապետության ագրոարդյունաբերական հանձնաժողովից (նախագահ՝ ընկ. Վ. Մովսիսյան) պատշաճ միջոցներ ձեռնարկել դրությունը շտկելու համար։ Հանրապետության Մինիստրների խորհուրդն ու կուսակցության Կենտկոմը պետք է խիստ պատասխանատվության ենթարկեն այս կարևոր գործում թերացողներին։

Կարևոր նշանակություն տալով անասունների ձմեռումը կազմակերպված անցկացնելու գործում ֆերմաների աշխատավորների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի բոլոր աշխատողների ստեղծագործական ակտիվության հետագա զարգացմանը, վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը որոշում ընդունեցին «1982—83 թվականների ձմռան ժամանակաշրջանում անասունների ձմեռումը հաջողությամբ անցկացնելու, անասնապահական մթերքների արտադրությունն ու գնումներն ավելացնելու համար համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին»։

Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է ապահովել սոցիալիստական մրցության կազմակերպման բարձր մակարդակն ու ներգործությունը, յուրաքանչյուր կոլեկտիվում ստեղծել գործարար իրադրություն, օպերատիվ կերպով ամփոփել արդյունքները, ապահովել դրանց հրապարակայնությունը, բարձրացնել ղեկավարների ու մասնագետների պատասխանատվությունը աշխատանքի և արտադրության կազմակերպման առաջավոր փորձն արմատավորելու, պետական պլանի և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու գործում։

Սեփական կերարտադրության ինտենսիվացման նպատակով ձեռնարկված միջոցների շնորհիվ կոլտնտեսություններն ու սովխոզները ընթացիկ տարում ես կուտակել են բավարար քանակությամբ կոշտ և հյութալի կեր։ Անասունների ձմեռման հաջող անցկացումը մեծապես պայմանավորված է կերի հմուտ և խելամիտ օգտագործմամբ։ Հարկավոր է առավելագույն չափով օգտագործել ստեղծված բարենպաստ պայմանները և անասունների ձմեռման ժամանակաշրջանում անասնապահական մթերքների արտադրությունը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացնել 10—12 տոկոսով։

Ինչպես գիտեք, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1982 թվականի հոկտեմբերյան պլենումը համակողմանիորեն վերլուծեց հացահատիկային տընտեսության և կերարտադրության բնագավառում կատարվող աշխատանքը և



մշակեց այդ ճյուղերի հետագա ինտենսիվացման, հացահատիկի, կոշտ և հյութալի կերի բերքի նկատելի ավելացման և դրա որակի բարձրացման կոնկրետ միջոցառումներ։ Մեր հանրապետության աշխատավորները ձեռնամուխ են եղել Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրների լուծմանը։

Խոսելով ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումների կատարման մասին՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ուշադրություն հրավիրեց ագրոարդյունաբերական կոմպլեքսի մեջ մտնող մյուս ճյուղերի աշխատանքի վրա։

Ճիշտ է, ասում է նա, ներկայումս հանրապետությունում արտադրված գյուղատնտեսական մթերքների վերամշակման գործում մենք լուրջ պրոբլեմներ չունենք։ Վերամշակման հզորությունները հիմնականում բավարարում են պահանջները։ Սակայն լուրջ են մեր անելիքները դրանց հետագա մեծացման և, որ ամենակարևորն է, վերամշակող արդյունաբերության թողարկած արտադրանքի որակի բարձրացման, տեսականու ավելացման և ապրանքային տեսքի բարելավման գործում։ Այստեղ շատ գործ կա հատկապես պահածոների արտադրության ասպարեզում։

Հետևողական աշխատանք է պահանջում տեղափոխման և վերամշակման ընթացքում կորուստների կանխումը։

Սննդարդյունաբերության, պտուղբանջարեղենի տնտեսության և մսի ու կաթի արդյունաբերության մինիստրությունների ղեկավարները՝ ընկ. ընկ. Ա. Դանիելյանը, Ս. Առաքելյանը, Ս. Վարդանյանը պետք է մշակեն և իրականացնեն հատուկ միջոցառումներ այս հարցերը լուծելու համար։

Հանրապետության պարենային ծրագրի իրագործումը մեծապես պայմանավորված է մելիորատիվ և ջրատնտեսական աշխատանքների նախատեսված ծավալների լրիվ և ժամանակին իրականացմամբ։ Այս գործում անհրաժեշտ փութաջանություն չեն ցուցաբերում ընկ. ընկ. Ռ. Շագոյանը և Մ. Գևորգյանը։ Իրականացվող աշխատանքները թե՛ տեմպերով և թե աշխարհագրությամբ մեզ բավարարել չեն կարող։

Գյուղի ագրոարդյունաբերական ողջ կոմպլեքսի աշխատավորների առջև առաջիկա 1983 թվականին ևս ծառացած են ծանրակշիռ խնդիրներ։ Նախ նշենք, որ եկող տարի զգալի չափով կավելանան անասնապահության և բուսաբուծության մթերքների արտադրության և պետությանը վաճառքի չափերը։ Օրինակ, մսի վաճառքի պլանը կավելանա 4 հազար տոննայով և կհասնի 112 հազար տոննայի։ Սա խիստ լարված պլան է։

Վերջին ժամանակներս տիրող խիստ անբարենպաստ եղանակներն զգալի դժվարություններ հարուցեցին աշնանային գյուղատնտեսական աշխատանքների կատարման գործում։ Շատ վայրերում հնարավորություն չեղավ ամբողջ ծավալով իրագործել բազմամյա տնկարկների հիմնման ու վերակառուցման աշխատանքները։ Միանգամայն պարզ է, որ չկատարվածը պետք է լրացվի գարնանը։ Առանձին շրջաններում (Ղափան, Գորիս, Ղուկասյան և այլն) տաբերային աղետի հետևանքով անօգտագործելի են դարձել անասնապահական շատ շենքեր ու կառույցներ, կան կորուստներ, որոնք, բնականաբար, բարդացնում են ձմեռման գործը։

Դժվարություններ են ծագել տրանսպորտի, հատկապես ավտոտրանսպորտի աշխատանքներում, որոնք խախտում են մատակարարումների համաչափությունը։

Այս ամենը մեզնից պահանջում է ավելի բարձր կազմակերպվածություն և կարգապահություն, եռանդուն ու հետևողական աշխատանք։

Դրանում մեծ դեր ունեն կուսակցության գյուղական շրջկոմները, կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների, ագրոարդյունաբերական մյուս ձեռնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունները։ Հարկավոր է ըստ ամենայնի ուժեղացնել կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը անմիջականորեն բրիգադներում և օղակներում, ֆերմաներում և տեղամասերում, գյուղի բոլոր աշխատավորների ջանքերը մոբիլիզացնել ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի որոշումների, հանրապետության պարենային ծրագրի կատարման համար։

Կուսակցության շրջկոմների, ժողովրդական դեպուտատների շրջանային

սովետների գործկոմների կարևորագույն խնդիրն է շրջանների ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման կառուցվածքը ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումի ցուցումներին համապատասխանեցնելու կոնկրետ միջոցառումների իրականացումը։

1982 թվականին հանրապետությունում առաջին անգամ ինչպես առևտրի մինիստրությունը, այնպես էլ Հայկոոպը չեն կատարել ապրանքաշրջանառության պլանները։

Տասն ամսում պետական և կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառության պլանը կատարվել է միայն 95 տոկոսով։ Ապրանքաշրջանառության պլանի կատարման ցուցանիշներով մեր հանրապետությունը ընթացիկ տարում գրավում է վերջին տեղը։ Որքան էլ տարօրինակ է, բայց առևտրի մինիստրության կոլեգիան (ընկ. Ս. Սաֆարյան) և Հայկոոպի վարչությունը (ընկ. Է. Սարգսյան) հաշտվել են այդ դրության հետ, չեն անհանգստանում գործերի վիճակի համար, կոնկրետ առաջարկություններ չեն անում ստեղծված դրությունը շտկելու նպատակով։ Մինչդեռ առևտրի գործը լավ կազմակերպելու, եղած ապրանքային ռեսուրսները ճիշտ և ժամանակին մանրելու միջոցով հնարավոր է լրջորեն բարելավել պլանների կատարումը։

Առևտրական ցանցում առանձին ապրանքների պակաս է զգացվում այն դեպքում, երբ դրանց մեծ մասով հանրապետությունը լի ու լի ապահովված է։

Հանրապետության առևտրական կազմակերպությունների ղեկավարները անհրաժեշտ աշխատանք չեն կատարում բնակչության պահանջարկի ուսումնասիրումը բարելավելու, դրա ճիշտ ձևավորման համար։ Լուրջ և հետևողական աշխատանք պետք է տարվի առևտրի ապրանքային (ինչպես արդյունաբերական, այնպես էլ պարենային) կառուցվածքի բարելավման ասպարեզում։

Անհրաժեշտ է նշել, որ հանրապետության պետպլանը, ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող մինիստրություններն ու գերատեսչությունները, միութենական ենթակայության արդյունաբերական ձեռնարկությունները նույնպես անբավարար են զբաղվում ապրանքների արտադրության կառուցվածքը կատարելագործելու, դրանց տեսականին բարելավելու և նորացնելու հարցերով։

Թեթև, սննդի, տեղական, փայտամշակման արդյունաբերության ձեռնարկությունները շատ դանդաղ են արտադրությունից հանում պահանջարկ չունեցող ապրանքները։ Մյուս կողմից էլ, ընդլայնելով ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, պետք է հատկապես լրջորեն մտահոգվել այդ ապրանքների տեսականու հարցով, ելնելով պահանջարկի կոնյունկտուրայի տվյալներից։ Գաղտնիք չէ, որ «Ա» խմբի շատ ձեռնարկություններ այդ գործում հեշտ ճանապարհ են որոնում, արտադրելով այն, ինչը չի պահանջում զգալի ջանքեր կամ տալիս է րոպեական, ես կասեի, վաղանցիկ օգուտ։ Վերցնենք, օրինակ, տխրահռչակ բյուրեղապակին։ Չէ որ այդ ապակին, այն էլ հիմնականում խոշոր սկահակների և այլ թանկարժեք իրերի ձևով, ով ասես արտադրում է։ Դրանց թվում են թե՛ «Կանազը», թե՛ «Հաստոցանորմալ» գործարանը, թե՛ «Ալմաստը», թե՛ գեղարվեստական ֆոնդը։ Չխոսելով արդեն այն մասին, որ մեծ քանակությամբ բյուրեղապակի է արտադրում «Հայապակի» միավորումը և տեղական արդյունաբերության մինիստրությունը։ Այս ամենով հանդերձ, ասենք, որ թեյի բաժակները առաջվա նման դեֆիցիտ են։

Հաճախակի են դեպքերը, երբ առանձին ապրանքներ արտադրվում են առանց առևտրի պատվերի և դրա հետևանքով ձեռնարկություններն սկսում են գնորդների ինքնուրույն որոնումներ ամբողջ երկրում։

Ուրեմն ժամանակը չէ՞, արդյոք, կարգուկանոն հաստատելու ծանր արդյունաբերության ձեռնարկությունների կողմից բնակչության կարիքների համար թողարկվող առարկաների տեսականու մեջ։ Այստեղ պահանջվում է պետպլանի, առևտրի մինիստրության խոր, ամենօրյա աշխատանքը միութենական ենթակայության բոլոր ձեռնարկությունների ղեկավարության հետ։ Մենք պետք է լուծենք առաջադրված խնդիրը, հասնենք այն բանին, որ մեքենաշինության և, առհասարակ, «Ա» խմբի ճյուղերի յուրաքանչյուր ձեռնարկություն արտադրի ժողովրդական սպառման ապրանքներ, որոնց գումարը մանրածախ գներով պակաս չլինի իր աշխատավարձի ֆոնդից։



Հանրապետության Մինիստրների խորհուրդը այս հարցը պետք է դիտի որպես տնտեսական մեծ նշանակություն ունեցող պրոբլեմ և լուծի այն։

Բնակչության կենցաղային սպասարկման մինիստրությունը (ընկ. Ս. Թումանյան) պետք է առավել ակտիվորեն իրականացնի սպասարկման ոլորտի հետագա ընդլայնման, գյուղական բնակչության սպասարկումը բարելավելու, սպասարկումների նոր տեսակներ մշակելու և ներդնելու միջոցառումներ։ Անհրաժեշտ է արմատապես կատարելագործել կադրերի պատրաստման ու վերապատրաստման աշխատանքը, հատուկ ուշադրություն նվիրել մասնագետների պրոֆեսիոնալ վարպետության բարձրացմանը։

Մեր ժողովրդական տնտեսության, նրա՝ առանց բացառության բոլոր ճյուղերի զարգացման հիմքում պետք է լինեն գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները։ Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ հանրապետության էկոնոմիկայի զարգացման տեմպերի արագացման, դրա ինտենսիվացման, արտադրության և աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման գլխավոր խնդրի լուծումը պայմանավորված է գիտատեխնիկական առաջընթացի արագացմամբ, արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների և առաջավոր փորձի լայն ու արագ ներդրմամբ։ Այս հանգամանքը ողջ սրությամբ շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում։

Առավել մեր, քան մեկ այլ հանրապետության համար, կարևոր են գիտատեխնիկական առաջընթացի, գիտության և արտադրության սերտաճման, ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արագ օգտագործման խնդիրները։ Չունենալով հումքային և այլ խոշոր ռեսուրսներ, մենք հազիվ թե կարողանանք Միության մեջ առաջին տեղում լինել արտադրության ծավալների բացարձակ մեծությամբ, բայց մենք կարող ենք և պետք է ամենաառաջավոր բնագծերը նվաճենք արտադրության և թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակով, դրա գիտատարությամբ, մեր արտադրանքի որակով և արդիականությամբ։ Ուստի գիտատեխնիկական առաջընթացի հարցերը միշտ պետք է առանցքայիններից լինեն հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններում, կարմիր թելի պես անցնեն դրանց յուրաքանչյուր բաժնով։

Մինչդեռ հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ դեռևս շատ թերություններ կան գիտության հասումների ու նոր տեխնիկայի ներդրման ասպարեզում, առայժմ անբավարար է գիտության կապը արտադրության հետ։ Իրենց տեխնիկական բարձր հագեցվածությամբ, արտադրական կուլտուրայով իրոք օրինակելի ձեռնարկությունների առկայության հետ մեկտեղ հանրապետությունում դեռևս շատ են այն գործարանները, որոնցում ցածր է արտադրության կազմակերպման ու տեխնոլոգիայի, արտադրական կուլտուրայի մակարդակը, չկան խիստ կանոնարկված տեխնոլոգիական գծեր, օգտագործում են թե՛ բարոյապես, թե՛ ֆիզիկապես հնացած սարքավորումներ։ Դա բնորոշ է, օրինակ, հաստոցաշինության, սարքաշինական, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և այլ ճյուղերի մի ամբողջ շարք ձեռնարկությունների։

Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր միավորում, յուրաքանչյուր գործարան ունենա տեխնիկական վերազինման մշակված ու հաստատված պլան, որը հիմնված լինի գիտության ու տեխնիկայի նորագույն հասումների վրա։ Այդ պլանները պետք է իրականացվեն ամենասեղմ ժամկետներում։ Այստեղ հարկավոր է ներգրավել համապատասխան կոնստրուկտորական բյուրոների, ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների ուժերը։

Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է վերահսկել ձեռնարկությունների տեխնիկական վերազինման գործը, ակտիվորեն նպաստել դրա իրականացմանը։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գիտության և արտադրության ինտեգրացման պրոբլեմը առաջվա պես ամենայն սրությամբ է ծառացած մեր առջև։ Հանրապետությունում կան արդյունաբերության, գյուղատնտեսության ձեռնարկությունների հետ գիտական հիմնարկությունների ստեղծագործական սերտ աշխատանքի ոչ քիչ օրինակներ և այդ դեպքերում, որպես կանոն, վերջնական լավ արդյունքներ են ձեռք բերվում։ Դրա օրինակն է Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի աշխատանքը համապատասխան ձեռնարկությունների հետ, գիտությունների ակադեմիայի քիմիական ֆիզիկայի ինստիտուտի աշխատանքը Կիրովականի բարձրջերմաստիճանային ջեռուցիչների գործարանի հետ, հողագործության գիտահետազոտական ինստիտուտի աշխատանքը գյուղատնտեսական ձեռնարկությունների հետ և այլն։ Սակայն, ամբողջությամբ վերցրած, գիտական շատ հիմնարկներություններ, և առաջին հերթին հանրապետության գիտությունների ակադեմիայի որոշ ինստիտուտներ, դեռևս գործում են ժողովրդական տնտեսության զարգացման խնդիրներից կտրված, սերտ կապ չեն հաստատել արդյունաբերության, գյուղատնտեսության և էկոնոմիկայի այլ ճյուղերի հետ։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը պահանջեց կուսակցական կոմիտեներից ու կազմակերպություններից մեծ աշխատանք տանել նյութական, էներգետիկ և աշխատանքային ռեսուրսների տնտեսման ասպարեզում։ Ընկ. Յու. Վ. Անդրոպովը շեշտեց, որ այժմ նյութական ռեսուրսների խնայման հարցին պետք է նայել նորովի և ոչ այնպես, թե տնտեսեցիր լավ է, չտնտեսեցիր՝ էլի ոչինչ, կանցնի։ Ներկայումս տնտեսումը, ժողովրդական բարիքի նկատմամբ խնայողական վերաբերմունքը մեր պլանների ռեալականության հարցն է։ Եվ մեր խնդիրն է գործարար պայքար ծավալել խնայողության համար, անտնտեսվարության դեմ, այդ գործում ներգրավելով յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի։

Հատուկ ուշադրություն պետք է նվիրել էներգետիկ ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը։ Հարկավոր է պայքարել մազութի կամ բենզինի յուրաքանչյուր տոննայի, գազի յուրաքանչյուր խորանարդ մետրի, էլեկտրաէներգիայի յուրաքանչյուր կիլովատ-ժամի և ջերմության յուրաքանչյուր կալորիայի խնայողության համար։

Ցավոք, հարկ է նշել, որ էներգիայի խնայողության կարևորագույն պրոբլեմին, որը միշտ խիստ հրատապ է եղել մեր հանրապետության համար, պատշաճ ուշադրություն չի նվիրվում։ Բնավ էլ ամենուրեք չէ, որ կիրառվում են ռեսուրսախնայողական տեխնոլոգիական պրոցեսներ։ Որոշ ձեռնարկություններում չի ապահովվում ջերմամատակարարման փոխադրումը փակ սիստեմի։ Ձեռնարկությունների մեծամասնությունը չի մշակել ժողովրդատնտեսական շրջանառության մեջ երկրորդային էներգառեսուրսների ներգրավման կազմակերպական-տեխնիկական միջոցառումների նախագծեր ու պլաններ։

Շարունակվում է մի շարք ձեռնարկությունների կողմից էլեկտրասպառման սահմանված լիմիտների գերազանցում, չի կատարելագործվում էլեկտրաէներգիայի և ջերմաէներգիայի սպառման հաշվառման ու վերահսկողության սիստեմը, իսկ գազի օգտագործման այդպիսի սիստեմ փաստորեն չկա։

Ստեղծված իրավիճակում էներգիայի խնայողության և լիմիտային կարգապահության կիրառման հարցերում վճռական դեր պետք է խաղան կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմները։ Յուրաքանչյուր շրջանում, յուրաքանչյուր քաղաքում այդ նպատակով ստեղծված հանձնաժողովները պետք է ամենօրյա խիստ վերահսկողություն իրականացնեն էներգետիկ ռեսուրսների բոլոր տեսակների ծախսումների նկատմամբ։ Ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարները դրա համար պետք ամենախիստ անձնական պատասխանատվություն կրեն։ Խախտումների յուրաքանչյուր դեպք պետք է քննարկման առարկա լինի կուսակցական կոմիտեներում և գործկոմներում,



յուրաքանչյուր խախտող պետք է խստագույն պատասխանատվության ենթարկվի։

Կուսակցական և սովետական մարմինների հատուկ հոգածության առարկան պետք է լինի բնակելի շենքերի, հիվանդանոցների, դպրոցների, մանկապարտեզների և բոլոր այն օբյեկտների առաջնահերթ և անխափան էլեկտրաջերմագազամատակարարումը, որոնք ապահովում են բնակչության կարիքները։

Հանրապետության էկոնոմիկայի համար առավել կարևոր հարցերից մեկը մնում է գազամատակարարման հուսալիության, այդ նպատակով ստորերկրյա գազապահեստարանների տարողությունների մեծացումը։ Լրջորեն պետք է զբաղվել նաև հեղուկ վառելանյութի պահեստային տնտեսության ընդարձակման հարցերով։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն այնուհետև հանգամանորեն անդրադառնում է ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման, կազմակերպչական և գաղափարախոսական աշխատանքի հարցերին։

Կուսակցության տնտեսական քաղաքականության կիրառման, հանրապետության էկոնոմիկայի զարգացման գործում, ասում է նա, կարևորագույն դեր ունեն կուսակցական կազմակերպությունները, Հայաստանի կոմկուսի շրջանային և քաղաքային կոմիտեները, որոնք լիակատար պատասխանատվություն են կրում ձեռնարկության, կազմակերպության, շրջանի կամ քաղաքի գործերի վիճակի համար, կազմակերպում և ուղղություն են տալիս աշխատավորական կոլեկտիվների գործունեությանը, նրանց մոբիլիզացնում պլանների և առաջադրանքների հաջող կատարման, կուսակցության առաջադրած խնդիրների լուծման համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, մեծ նշանակություն տալով արդյունաբերական արտադրության աճի բարձր տեմպերի ապահովմանը, դեռևս տարվա սկզբներին կուսակցության շրջանային ու քաղաքային կոմիտեների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ սոցիալիստական մրցության լայն ծավալմամբ ապահովել պլանների կատարումը առնվազն 103 տոկոսով։ Այժմ եկել է ժամանակը ամփոփելու արդյունքները, տեսնելու, թե ինչպես է կատարվել այդ ցուցումը։ Մեր շատ քաղկոմներ ու շրջկոմներ ապահովել են պլանների կատարումը առաջադրված մակարդակով, հասել են արդյունաբերական արտադրության աճի բարձր տեմպերի։ Խրախուսելի է կուսակցության Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմների, Կամոյի, Նաիրիի, Աշտարակի, Գորիսի, Սևանի, Արթիկի շրջկոմների աշխատանքը, որոնք կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը նպատակամղել են պլանների բարեխիղճ կատարմանն ու գերակատարմանը։

Բայց դրա հետ մեկտեղ, ցավոք, ոչ բոլոր շրջանների կուսակցական կոմիտեները, սկզբնական կուսակցական կազմակերպություններն են կարողացել ինչպես հարկն է մոբիլիզացնել աշխատավորության ջանքերը առաջադրված խնդրի լուծման համար։ Դրա հետևանքով որոշ շրջաններում մենք միանգամայն նվազ արդյունքներ ունենք։ Այսպես, օրինակ, Ապարանի շրջանի ձեռնարկություններն իրացման տասն ամսվա պլանը կատարել են 97,1 տոկոսով, որը հանգեցրել է արտադրանքի իրացման ծավալի նվազեցման։ Ստեփանավանի շրջանի ձեռնարկություններն ապրանքային արտադրանքի արտադրության տասնամսյա պլանը կատարել են միայն 99,6 տոկոսով, կրճատել թողարկվող արտադրանքի ծավալը։ Նման կացություն է տիրում Նոյեմբերյանի և այլ շրջաններում։

Իհարկե, ամենից առաջ պլանների թերակատարման համար պատասխան պետք է տան ձեռնարկությունների ու կազմակերպությունների և համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարները։

Բայց հարկ է, որ նշված շրջանների կուսակցական կոմիտեների առաջին քարտուղարներ ընկ. Բ. Անդրեասյանը, Վ. Բալայանը, Ս. Պետրոսյանը

նույնպես լրջորեն եզրակացություն անեն ասվածից, առավել կոնկրետ զբաղվեն արդյունաբերության աշխատանքային հարցերով։

Կուսակցության շրջանային կոմիտեները պետք է ավելի հաստատակամորեն ու կոնկրետ զբաղվեն պլանների կատարման և արդյունաբերական արտադրության ծավալների աճի ապահովման խնդրով։ Միայն այդպես մենք կկարողանանք բարձր ցուցանիշների հասնել ողջ հանրապետությունում։

Ի դեպ նշենք, որ արտադրության աճի բարձր տեմպերի ապահովման անհրաժեշտության մասին մեր այսքան հետևողական խոսակցությունը չի բխում պրեստիժային ամբիցիաներից։ Բարձր տեմպերը ապահովում են սոցիալական և տնտեսական շատ կարևոր հարցերի լուծումը։

Եկեք, ընկերնե՛ր, կրկին անդրադառնանք որակի հարցերին և այս անգամ այն քննարկենք, այսպես ասած, քաղաքների ու շրջանների մակարդակով։ Մենք արդեն ասացինք, որ որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը հանրապետությունում կազմում է 19,1 տոկոս։ Դրանում իրենց ավանդն են մուծել Հայաստանի շատ քաղաքներ ու շրջաններ։ Այսպես, Կիրովականում մեծ ու նպատակասլաց աշխատանք է կատարվում արտադրանքի որակի բարձրացման, որակի կառավարման սիստեմի ներդրման նպատակով։ Դրա շնորհիվ քաղաքի արդյունաբերության մեջ պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը կազմում է 45,3 տոկոս, իսկ ատեստավորման ենթակա արտադրանքի ծավալի մեջ՝ գրեթե 70 տոկոս։ Արտադրանքի որակի բարձրացման ուղղությամբ լուրջ աշխատանք են կատարում նաև Երևանի, Լենինականի ու Դիլիջանի քաղկոմները, Թումանյանի, Գորիսի, Սիսիանի շրջկոմները։

Բայց ամենուրեք չէ, որ գործերը բարվոք են։ Արարատի շրջանում, օրինակ, որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը կազմում է միայն 3 տոկոս, Մասիսի շրջանում՝ 2,5 տոկոս, Թալինի շրջանում՝ 0,6 տոկոս, Արտաշատի շրջանում՝ 3,3 տոկոս, Հոկտեմբերյանի շրջանում՝ 3,5 տոկոս։ Այս թվերը խոսուն են։ Դրանք ցույց են տալիս, որ նշված շրջաններում կուսակցական կոմիտեները պարզապես տարված են պլանների կատարմամբ, աչքաթող անելով որակի հարցերը։

Անդրադառնանք, ընկերնե՛ր, նաև կապիտալ շինարարության հարցերին։ Ինչպե՞ս են զբաղվում այդ հարցերով մեր շրջկոմներն ու քաղկոմները։ Շրջկոմները և շրջգործկոմները սովորաբար արտակարգ ակտիվություն են ցուցաբերում տարվա կամ հնգամյակի պլանները ձևակերպելիս։ Դիմում են հանրապետության ամենաբարձր ինստանցիաներին, հաճախ համոզիչ կերպով ապացուցելով, թե ինչպիսի՜ ծայրահեղ անհրաժեշտություն ունի տվյալ օբյեկտը շրջանի կյանքի համար։

Այդպես էր, օրինակ, Երևանի Օրջոնիկիձեի շրջանում կառուցվող պոլիկլինիկայի հարցում, որտեղ իրոք բնակչության բժշկական սպասարկումը բարելավման կարիք է զգում։ Իսկ ինչպե՞ս է կառուցվում այդ կարևոր և, ի դեպ, ըստ պլանի այս տարի գործարկվելիք օբյեկտը։ Կապիտալ ներդրումները 10 ամիսներում իրացվել են միայն 72,8 տոկոսով, իսկ շինմոնտաժային աշխատանքների ծավալները իրականացվել են 60,5 տոկոսով։ Միանգամայն ակնհայտ է, որ եթե կուսակցության Օրջոնիկիձեի շրջկոմը ընդհուպ և հետևողականորեն զբաղվեր այս կառույցով, ապա դրությունն այլ կլիներ։

Վերլուծությունը ցույց է տալիս, որ բնակելի տների, կուլտուր-կենցաղային օբյեկտների, դպրոցների, մանկապարտեզների շինարարությունը բավարար է ընթանում այնտեղ, որտեղ շրջանային կոմիտեներն ամեն օր սևեռուն զբաղվում են այդ հարցերով։ Իսկ այնտեղ, որտեղ կուսակցական մարմիններն ինքնահեռացել են այս խնդիրներից, պատկերը բավական տխուր է։

Հարկ է նաև, որ կուսակցության շրջանային ու քաղաքային բոլոր կոմիտեները, սովետների գործկոմները հետևողականորեն զբաղվեն քաղաքների ու շրջանների սոցիալական զարգացման նպատակով միութենական ենթակայության ձեռնարկությունների միջոցների ներգրավման հարցերով։

Մի խոսքով, մեր կուսակցական կոմիտեներն անելիքներ շատ ունեն։ Պահանջվում է անընդհատ կատարելագործել աշխատանքի ոճն ու մեթոդները,



դրանք համապատասխանեցնելով կուսակցության պահանջներին, ժամանակակից խնդիրների լուծման պահանջներին։

Մեր առջև ծառացած մասշտաբային խնդիրների հաջող լուծումը պահանջում է բարձր կազմակերպվածություն, գործարարություն ու գիտակցականություն, կոմունիստների, բոլոր աշխատավորների նախաձեռնության և ակտիվության հետագա զարգացում։ Այդ խնդիրների իրականացմանը պետք է նպատակամղվի կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական ողջ աշխատանքը։

Նշված խնդիրների իրականացման գործում մեծ է սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերը, որոնք գործում են առաջավոր դիրքերում, աշխատավորական կոլեկտիվներում։ Կուսակցության քաղկոմների, շրջկոմների պարտքն է՝ հետևողականորեն զարգացնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների նախաձեռնությունն ու մարտունակությունը, նպաստել նաև նրանց աշխատանքի մեթոդների կատարելագործմանը։

Անհրաժեշտ է ըստ ամենայնի, հետևողականորեն բարելավել կադրերի ընտրության ու կատարման ստուգման գործը։ «Հարկավոր է,— շեշտեց ընկ. Յու. Վ. Անդրոպովը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում,— ճիշտ տեղաբաշխել կադրերը, որպեսզի վճռական տեղամասերում կանգնած լինեն քաղաքականապես հասուն, իրազեկ, նախաձեռնող, կազմակերպչական ընդունակություններով և նորի զգացումով օժտված մարդիկ, առանց որի մեր ժամանակներում չի կարելի հաջողությամբ ղեկավարել ժամանակակից արտադրությունը»։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները մշտապես հոգ են տանում կադրերի նկատմամբ, օգնում նրանց առաջադրված խնդիրների լուծման գործում, ստեղծում նախաձեռնողաբար աշխատելու լայն հնարավորություններ։ Դրա հետ մեկտեղ կուսակցական կոմիտեները չեն կարող հաշտվել առանձին ղեկավարների վատ աշխատանքի հետ, անփութության ու անպատասխանատվության դրսևորումների հետ։ Անհրաժեշտ է ուժեղացնել պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, բարձրացնել նրանց պատասխանատվությունը վստահված տեղամասերում գործերի վիճակի համար, համապետական, համաժողովրդական շահերի խստիվ պահպանման համար։ Անհրաժեշտ է, որ մեր բոլոր կադրերը տոգորվեն կուսակցության ու ժողովրդի հանդեպ պարտքի բարձր զգացումով, իրենց ջանքերը, գիտելիքներն ու փորձը գործադրեն ավելի ծանրակշիռ արդյունքների հասնելու համար, լինեն կուսակցության ու կառավարության որոշումների կենսագործման ջատագովներն ու անմիջական կազմակերպիչները։

Պետք է համառ ու հետևողական աշխատանք ծավալել ամենուրեք կուսակցական, պետական ու կատարողական կարգապահության ամրապնդման նպատակով, հասնել այն բանին, որ մեր կուսակցության ու կառավարության դիրեկտիվները, սեփական որոշումները կատարվեն ժամանակին ու անթերի, վճռականապես հրաժարվելով միևնույն հարցի վերաբերյալ բազում որոշումներ ընդունելու արատավոր պրակտիկայից։

Կուսակցական կազմակերպությունները, գաղափարական ոլորտի բոլոր աշխատողները պետք է ծավալեն ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի նյութերի ու որոշումների լայն պարզաբանումը, յուրաքանչյուր աշխատավորի պարզաբանեն այն մեծ ու պատասխանատու խնդիրները, որոնք լուծվելու են 1983 թվականին, ակտիվ, կենդանի կուսակցական խոսքով նպաստեն մասսաների ստեղծագործական նախաձեռնության աճին, աշխատավորներին մոբիլիզացնեն տասնմեկերորդ հնգամյակի առանցքային՝ երրորդ տարվա պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար։

Ագիտատորներն ու քաղինֆորմատորները, պրոպագանդիստներն ու դասախոսները, մամուլի, հեռուստատեսության ու ռադիոյի աշխատողները կոչված են համակողմանիորեն վառ ու համոզիչ բացահայտելու յուրաքանչյուր կոլեկտիվում կատարվող համբերաշխ ու կազմակերպված աշխատանքի հսկայական նշանակությունը։ Հարկավոր է ամեն մի աշխատավորի հասցնել ՍՄԿԿ

*Կենտկոմի պլենումում շեշտված այն միտքը, թե պլանների կատարումը պայմանավորված է յուրաքանչյուրի աշխատանքային ավանդով, որպեսզի ամենքը լավ հասկանան այն պարզ ճշմարտությունը, թե որքան մենք լավ աշխատենք, այնքան ավելի լավ կապրենք։ Մասսայական ինֆորմացիայի, կուսակցական պրոպագանդայի միջոցների գործունեության տեսադաշտում պետք է միշտ գտնվեն արժեքավոր նախաձեռնությունների և առաջավոր փորձի, նյութական միջոցների և էներգետիկ ռեսուրսների խնայողության, սոցիալիստական մրցության կազմակերպման արդյունավետ մեթոդների պաշտպանության ու տարածման հարցերը։ Մարդկանց մեջ մշտապես պետք է դաստիարակել ջանասեր, հոգատար տանտիրոջ հոգեբանություն, նրանց համակել իրենց աշխատանքի արդյունքների համար բարձր պատասխանատվության զգացումով։*

*Մեր գրավոր ու բանավոր պրոպագանդայի պարտքն է խորությամբ բացահայտել կոմունիստական կուսակցության ու սովետական պետության լենինյան արտաքին խաղաղասիրական քաղաքականությունը, պաշտպանել ու լայնորեն տարածել պլենումում շեշտված այն դրույթը, թե այսօրվա միջազգային իրադրության մեջ իմպերիալիզմի մեղքով առաջացած լարվածությունը հաղթահարելի է ու պետք է հաղթահարվի։*

*Հարկավոր է հմտորեն և օպերատիվ կերպով մերկացնել Արևմուտքի ռեակցիոն շրջանների ագրեսիվ նկրտումները, ուժեղացնել մեր հակապրոպագանդայի հարձակողականությունը, փաստարկված ձևով բացահայտել բուրժուական պրոպագանդայի ստահոդ ու զրպարտչական բնույթը։ Մեր ամբողջ պրոպագանդայի միջով կարմիր թելի պես պետք է անցնի այն միտքը, որ սոցիալիզմի իդեալը առանց զենքի խաղաղությունն է, որ մեր երկիրը, մեր կուսակցությունը ամեն անհրաժեշտ բան ձեռնարկել են ու կձեռնարկեն, որպեսզի չկրկնվեն պատերազմի սարսափներն ու ողբերգությունը։*

*Ավարտվում է հնգամյակի երկրորդ տարին։ Շուտով մենք կթևակոխենք նրա երրորդ՝ առանցքային տարին։ Եվ այն բանից, թե ինչպես կաշխատենք, ինչպիսի հետևողականությամբ կլուծենք առաջիկա տարվա տնտեսական և քաղաքական խնդիրները, մեծապես կախված կլինի ողջ տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարումը։*

*Հանրապետությունում ամենուրեք աշխատավորական կոլեկտիվները շուտով սահմանելու են իրենց անելիքները, ընդունելու են 1983 թվականի տնտեսական և սոցիալական զարգացման պլանների և առաջադրանքների կատարման ու գերակատարման սոցիալիստական պարտավորությունները։ Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է սոցիալիստական մրցությունը նպատակամղեն ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան պլենումի որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Յու. Վ. Անդրոպովի ելույթում առաջադրված խնդիրների լիակատար և ժամանակին լուծմանը։*

*Արդյունաբերության աշխատողների խնդիրն է՝ ապահովել արտադրության ծավալների աճի բարձր տեմպեր։ Հաշվի առնելով այն հանգամանքը, որ պլանով նախատեսված աճի տեմպերը ցածր են և մեզ բավարարել չեն կարող, հարկ է այս տարի ևս պլանների կատարման բնագիծն ընդունել 103 տոկոսը։ Անվերապահորեն և լրիվ ծավալով պետք է ապահովվի երկրի մյուս տնտեսական շրջաններ առաքվող արտադրանքի իրացման պլանների կատարումը։*

*Գյուղի աշխատավորները պետք է անեն ամեն բան պարենային ծրագրի հետևողական իրականացման համար, բարձրացնեն երկրագործական և անասնապահական մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի ծավալները, հասնեն յուրաքանչյուր հեկտար հողի, յուրաքանչյուր խորանարդ մետր ջրի, մեքենաների ու մեխանիզմների, բոլոր հնարավորությունների արդյունավետ օգտագործման։*

*Իրենց աշխատանքների համար բեկումնային պետք է դարձնեն եկող տարին շինարարները։ Նրանք պետք է բարձրացնեն շինարարական աշխատանքների կազմակերպման մակարդակն ու որակը, ժամանակին շահագործման հանձնեն գործարկվող օբյեկտները, ապահովեն աշխատանքների համաչափությունը տարվա ընթացքում։*



*Աշխատանքի արդյունավետությունն ու կուլտուրան պետք է բարձրացնեն տրանսպորտի, կապի և սպասարկման ոլորտի ձեռնարկություններն ու կազմակերպությունները։*

*Գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացման, արտադրության հետ կապի ամրապնդման, հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման կոնկրետ հարցերի լուծմանը պետք է նպատակաուղղվեն մեր գիտահետազոտական ինստիտուտների ու կազմակերպությունների կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունները, բոլոր գիտական աշխատողների ջանքերը։ Մեր առջև ծառացած խնդիրների հաջող լուծմանը նըպաստող լուրջ անելիքներ ունեն հանրապետության ժողովրդական կրթության, կեղարվեստի, կուլտուրայի աշխատողները։*

*Մի խոսքով, մեզ բոլորիս սպասում է լարված, քրտնաջան և եռանդուն աշխատանք։*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմը համոզված է, որ աշխատավորական կոլեկտիվները կուսակցական կազմակերպությունների գլխավորությամբ պատվով կկատարեն մեր լենինյան կուսակցության ստեղծագործական պլանները, նոր հաջողությունների կհասնեն կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում։*

*Թույլ տվեք, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հավաստիացնել ՍՄԿԿ Կենտկոմին, որ հանրապետության կոմունիստները, կուսակցական կազմակերպությունները, բոլոր աշխատավորները հետևողականորեն կիրականացնեն կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները, իրենց ավանդը կներդնեն մեր մեծ Հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության հետագա ամրապնդման գործում։*

---

## ՍՍՀՄ կազմավորման փառավոր վաթսունամյակը

# ԱԶԱՏ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԴԱՇԻՆՔԸ

**Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎ**
*Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ*

*ՎԱԹՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ՝ 1922 թվականի դեկտեմբերի 30-ին, Սովետների համամիութենական առաջին համագումարի ընդունած դեկլարացիան հռչակեց բանվորների և գյուղացիների աշխարհում առաջին միասնական միութենական բազմազգ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիմնադրումը։*

*Այդ օրը՝ 1922 թվականի դեկտեմբերի 30-ը, ՍՍՀՄ կազմի մեջ միավորված ժողովուրդների պայծառ այգաբացն էր։*

*Սովետների համամիութենական առաջին համագումարը փակելիս Կենտգործկոմի նախագահ Միխայիլ Իվանովիչ Կալինինն այն միտքը հայտնեց, թե համեմատաբար համեստ իրադրության պայմաններում կատարված պետական ու քաղաքական խոշոր նշանակություն ունեցող այս ակտը համաշխարհային կարևորության իրադարձություն է, որը քաղաքական հորիզոնում հետզհետե ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանալու։*

*Համաշխարհային պատմությունը չգիտե բազում ազգերի ու ազգությունների կուռ միավորման, նրանց անկեղծ եղբայրության, փոխադարձ աջակցության և անսասան դաշնադրության այնպիսի օրինակ, որպիսին ժողովուրդների սովետական ընտանիքն է, որը կամավոր հիմունքներով միավորում է 15 սուվերեն և իրավահավասար միութենական, 20 ինքնավար հանրապետություններ, մի շարք ինքնավար մարզեր ու ազգային օկրուգներ, որոնցում ապրում և ստեղծագործում են 100-ից ավելի ազգեր ու ազգություններ։*

*Սովետական Միության ստեղծումը մեծ Հոկտեմբերի գործի օրգանական շարունակությունն էր, ազատ ազգերի կամավոր դաշինքի վերաբերյալ անմահ Լենինի գաղափարների կենդանի մարմնացումը, որն իր քաղաքական ու սոցիալ-տնտեսական հետևանքներով կարևորագույն տեղ գրավեց սովետական պետության պատմության մեջ։*

*«Մենք ազգերի* կամավոր *միություն ենք ուզում,— նշել է Վ. Ի. Լենինը,— այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն չհանդուրժեր մի ազգի կողմից մյուսի նկատմամբ, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (*Երկեր, *հ. 30, էջ 368)։*

*Ստեղծելով Սովետական Միությունը, դնելով նրա շենքի առաջին անկյունաքարը, Լենինը, կոմունիստական կուսակցությունը մտածում էին ո՛չ միայն մեր երկրի ապագայի մասին։ Նրանց խորաթափանց հայացքն ընդգրկում էր ողջ մարդկության ճակատագիրը։ Նրանք համոզված էին, որ սոցիա-*



*լիստական բազմազգ պետության ստեղծումը, պետություն, որտեղ չկան ճնշում ու շահագործում, աշխարհի բոլոր մարդկանց կօգնի հարթելու իրենց ազատագրության ուղին։*

*Հնագույն ժամանակներից մինչև մեծ Հոկտեմբերը, ամբողջ մարդկային պատմությունը դասակարգային, ռասայական, ազգային բախումների ու պատերազմների պատմություն է եղել։ Եվ հարյուրամյակներ մարդկության պրոգրեսիվ մտածողները երազել են այդպիսի դրությունից ելք գտնելու համար։ Այժմ ամբողջ աշխարհը վկա է, թե կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը դասակարգային ու ազգային հարցի արմատական լուծման գործում ինչպիսի պատմական հաջողությունների են հասել։*

*Սխալ կլիներ մեր սասծից եզրակացնել, թե ՍՍՀՄ կազմավորման ընթացքը եղել է հեշտ ու անարգել։ Իրականում եղել են մասնակի սխալներ ու արգելքներ։ Ճշմարիտ է, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթությամբ ազատագրվեց ոչ միայն նրա վճռական շարժիչ ուժը՝ Ռուսաստանի պրոլետարիատը, այլև նրա դաշնակից աշխատավոր գյուղացիությունը, որը կեղեքվող ազգերի բնակչության ճնշող մեծամասնությունն էր կազմում։ Իրականացավ հեղափոխության հանճարեղ առաջնորդ Լենինի կանխատեսությունը՝ բուն կյանքը նորաստեղծ սովետական հանրապետություններին առաջ մղեց միավորման հունով, ՌԿ(բ) կուսակցության գործադրած հսկայական ջանքերի շնորհիվ։*

*Հետևաբար, մեծ Հոկտեմբերը, մեկընդմիշտ վերացնելով միավորված ազգերի կեղեքումը, ռեալ պայմաններ ստեղծեց ոչ միայն նրանց եղբայրացման, բարեկամացման ու սովետական անկախ, իրավահավասար պետության ստեղծման, այլև նյութական ու հոգևոր կուլտուրայի զարգացման ու ծաղկման համար։*

*Այո՛, ՍՍՀՄ-ն իր դարակազմիկ ու վիթխարի առաջընթացով պարտական է անմահ Լենինի հանճարի արարչագործ սխրանքներին, որոնցից մեկը՝ ՍՍՀՄ պատմական կազմավորումն է, որի տոնը վեհագույն շուքով նշվում է մեր անպարտելի հայրենիքում։ Սովետական ժողովուրդը չի մոռանում իր կուսակցության XXVI համագումարի հիշեցումը, որ «Հեշտությամբ չի ծնվում նոր կյանքը։ Դժվարին, երբեմն տանջալից է սոցիալական առաջընթացի ուղին։ Բայց հենց դրա շնորհիվ առավել նշանակալից, առավել ցայտուն են սոցիալիստական հասարակության նվաճումները, առավել վեհասքանչ են այն կառուցողների ու պաշտպանողների սխրանքները։*

*Մեր կոմունիստական կուսակցությանը, մեզ՝ սովետական կոմունիստներիս, վիճակվել է նախանձելի դեր՝ գտնվել կյանքի սոցիալիստական վերափոխման ակունքների մոտ» (*ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 131)։*

*Լենինը քանիցս նշել է, որ «մեզ երջանկություն բաժին ընկավ* սկսելու *սովետական պետության կառուցումը,* սկսելու *դրանով համաշխարհային պատմության նոր դարաշրջան, այն* նոր *դասակարգի տիրապետության դարաշրջանը, որը ճնշված է բոլոր կապիտալիստական երկրներում և ամենուրեք գնում է դեպի նոր կյանք, դեպի հաղթանակ բուրժուազիայի դեմ, դեպի պրոլետարիատի դիկտատուրան, դեպի մարդկության ազատագրումը կապիտալի լծից, իմպերիալիստական պատերազմներից» (*Երկեր, *հ. 33, էջ 42)։*

*Հիրավի, սովետական կարգերի շնորհիվ կազմավորված ազգերի ու ժողովուրդների եղբայրական միավորմամբ ՍՍՀՄ-ը դարձել է սոցիալական ու ազգային կեղեքումից ողջ աշխարհի հասարակությանն ընդմիշտ փրկող լուսավառ փարոսը։*

*Ահա թե ինչու իմաստնագույն Լենինը հպարտությամբ շեշտում էր. «Մենք, բոլշևիկների կուսակցությունը, Ռուսաստանին* համոզեցինք*։ Մենք Ռուսաստանը* նվաճեցինք *հարուստներից՝ չքավորների համար, շահագործողներից՝ աշխատավորության համար։ Մենք այժմ պետք է Ռուսաստանը* կառավարենք*» (*ԵԼԺ*, հ. 36, էջ 211)։*

*Այդ արգասաբեր կառավարվող սոցիալիստական զարմանահրաշ հասարակարգի կառուցմամբ բազում ազգեր ու ժողովուրդներ այսօր ուրախությամբ*

*րումը հիմնական ցուցանիշների գծով: Վստահորեն կարող ենք ասել, որ բոլոր հիմքերն առկա են հնգամյակի երկրորդ տարվա պլանային առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար:*

*Մեր երկրի աշխատավորները բազմիցս համոզվել են, որ կոմունիստների կուսակցությունը միշտ և բոլոր փորձություններում անշեղորեն մնում է լենինյան դիրքերում, հաստատակամորեն գտնվում իր պատմական առաքելության բարձրության վրա: Դա ապահովում է հարազատ կուսակցության քաղաքականության հետ սովետական մարդկանց ձգտումների ու գործերի անխախտ կապը, հայրենիքի բարօրության համար ժողովրդի ստեղծարար աշխատանքը:*

*Հայ ժողովուրդը հպարտ է, որ ինքն ապրում ու աշխատում է սովետական ժողովուրդների մեծ ու անխախտ ընտանիքում:*

*Այս օրերին հայ ժողովուրդը մի նոր ցնծություն է ապրում: Հնգակի շքանշանակիր Սովետական Հայաստանի մայրաքաղաք Երևանը հեղափոխական շարժմանը, Հայաստանում սովետական իշխանության հաստատմանն ու ամրապնդմանը մատուցած ծառայությունների, 1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում ֆաշիստական զավթիչների դեմ տարած հաղթանակի գործում ներդրած մեծ ավանդի և տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում քաղաքի աշխատավորների ձեռք բերած հաջողությունների համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով արժանացավ մեր հայրենիքի բարձրագույն պարգևին՝ Լենինի շքանշանի: Այս մեծ գնահատականը նոր լիցք հաղորդեց մայրաքաղաքի, հանրապետության բոլոր աշխատավորներին՝ կոմունիստական շինարարության ասպարեզում նորանոր հաջողությունների հասնելու համար: Դա հայ ժողովրդի նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության մեծ հոգատարության մի նոր վկայություն է:*

*Խորապես գիտակցելով մեր մեծ հայրենիքի, սոցիալիզմի երկրների ճակատագրի նկատմամբ իր պատասխանատվությունը, սովետական բոլոր ժողովուրդների նման հայ ժողովուրդն այսուհետ ևս աչքի լույսի պես կպահպանի սովետական ժողովուրդների անխախտ բարեկամությունը, բարեխիղճ ու հայրենանվեր աշխատանքով, լենինյան պատգամներին անկեղծ նվիրումով փառավոր նոր էջեր կգրի մեր մեծ հայրենիքի՝ կոմունիստական հասարակարգ կառուցող Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հերոսական տարեգրության մեջ:*

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ

**Մ. Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ վերստին շեշտվեց ՍՄԿԿ-ի, սովետական պետության արտաքին քաղաքական գիծը, որը դարձել է սպառազինությունների մրցավազքի սանձահարման, խաղաղության ամրապնդման ու լարվածության թուլացման, ժողովուրդների սուվերեն իրավունքների և ազատության պաշտպանության համար առաջադիմական ուժերի պայքարի կարևոր գործոն: «Կուսակցության և պետության արտաքին քաղաքական գործունեության առանցքային ուղղությունը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— եղել և մնում է պայքարը պատերազմի սպառնալիքը թուլացնելու, սպառազինությունների մրցավազքը սանձահարելու համար»* (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 42):*

*Իմպերիալիստական ռեակցիոն շրջանները, շիկացնելով միջազգային լարվածությունը, սանձազերծելով իր մասշտաբներով աննախադեպ սպառազինությունների մրցավազք, միաժամանակ ծավալում են հակակոմունիստական կամպանիա: Ընդ որում առանձնահատուկ հարձակման օբյեկտ են դարձնում սովետական պետության սոցիալիստական, դասակարգային ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությունը:*

*Իմպերիալիստական գաղափարախոսներն ու քաղաքագետները հաճախ դիմում են մերկապարանոց, պարզունակ հակակոմունիստական զրպարտանքի, ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունն անվանելով իմպերիալիստական, ագրեսիվ, գաղութատիրական և այլն: ԱՄՆ-ի նախկին պետական քարտուղար Ա. Հեյգը, օրինակ, զազրախոսելով այն մասին, թե իբր սովետական բանակը վերածվել է գլոբալ «հարձակողական բանակի, ծովային և օդային ուժի», հայտարարել է, թե դա ՍՍՀՄ «կայսերական արտաքին քաղաքականության հիմքն է»: Նրա միտքը կրկնում է ամերիկացի պրոֆեսոր Դ. Կալեոն, հայտարարելով «սովետական իմպերիալիզմի» մասին: Այսօր բուրժուական մամուլում բազմաթիվ կեղծ հայտարարություններ են արվում, թե իբր ՍՍՀՄ-ը վարում է հարձակողական, ագրեսիվ «ստրատեգիա ամբողջ աշխարհում և ձգտում է համաշխարհային տիրապետության»:*

*Այսօրվա պատմությունն ու պրակտիկան հաստատում են, որ սովետական արտաքին քաղաքականությունը, ինչպես իրավացիորեն շեշտված է ՍՄԿԿ Կենտկոմի «ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին» որոշման մեջ, խորապես հումանիստական է, դեմոկրատական, համապատասխանում է ՍՍՀՄ ժողովուրդների, եղբայրական սոցիալիստական երկրների, բովանդակ խաղաղասեր մարդկության շահերին: «Առաջավոր երկրների հեղափոխականների և բոլոր ճնշված ժողովուրդների հետ դաշինք կնքած ընդդեմ ամեն տեսակ և բոլոր իմպերիալիստների՝ սա է պրոլետարիատի արտաքին քաղաքականությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 32, էջ 415):*

*ՍՍՀՄ ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությունը դասակարգային, սոցիալիստական արտաքին քաղաքականություն է, որն օրգանա-*

տության մեջ ազգային սոցիալիստական պետությունների և ազգային պետական կազմավորումների զանազան ձևերի համախմբման, դրանց ներդաշնակ զարգացման փաստը ազգային հարաբերություններում եղած իսկական դեմոկրատիզմի վառ արտահայտությունն է։ Սոցիալիստական դեմոկրատիզմը հասարակության կյանքի բոլոր ոլորտներում, այդ թվում և ազգային հարաբերություններում, մերձեցնում է բոլոր աշխատավորներին, բոլոր դասակարգերին, սոցիալական խմբերին, ազգերին ու ժողովուրդներին, ամրապնդում նրանց քաղաքական միասնությունը, հետևաբար և՝ հասարակության քաղաքական հիմքը։ «ՍՍՀՄ փորձով ապացուցված է՝ որքան լայնորեն է զարգանում սոցիալիստական դեմոկրատիան, որքան դեմոկրատական է երկրի կյանքը, այնքան մեծ է բոլոր ազգերի և ազգությունների փոխադարձ կամավոր ձգողական ուժը»,— ասված է ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Սոցիալիստական հասարակության քաղաքական կայունությունը, բարձր դեմոկրատիզմը զորեղ խթաններ, ուժ են հաղորդում նրա արտաքին քաղաքականությանը, որի հաջողությունները դասակարգային պայքարում, միջազգային հարաբերություններում, համաշխարհային երկու սիստեմների պայքարում և այլ հարցերում կարևոր պայմաններ են ստեղծում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործման և այլ խնդիրներում ներքին քաղաքականության կիրառման համար։

Ինչ վերաբերում է այնպիսի բազմազգ սոցիալիստական պետությանը, ինչպիսին է ՍՍՀՄ-ը, որտեղ բեղմնավոր կերպով կիրառվում է պատմական հարուստ ավանդություններ ունեցող ներքին ինտերնացիոնալ քաղաքականություն՝ ուղղված բոլոր ազգերի ու ժողովուրդների սերտ մերձեցման, նրանց ինտերնացիոնալ միասնության նպատակին, ապա նրա արտաքին քաղաքականությունը հատկապես վառ ու ցցուն կերպով դրսևորում է իր միասնությունը ներքին քաղաքականության հետ։ Ներքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը ուղղակի «ելք» ունի դեպի արտաքին քաղաքականություն, որը ձևավորվում, հատկապես հուժկու խթաններ է ստանում ներքին ինտերնացիոնալ պրոցեսներից։ Ներքին քաղաքականության շատ ասպեկտներ, առանձնահատկություններ փոխանցնում են արտաքին քաղաքականություն, դառնում ինքնին հատուկ այդ քաղաքականությանը։ Եվ բանն ամենևին էլ նման հաջորդականության ավտոմատիզմը չէ, այլ այն, որ, ամենից առաջ, ՍՍՀՄ թե՛ ներքին, թե՛ արտաքին քաղաքականությունը լիովին հաշվի են առնում միասնական բնույթ, ընդհանուր հիմքեր ունեցող օբյեկտիվ հասարակական օրինաչափությունների գործողությունը։ Օրինակ, ազգային հարաբերություններում երկու պատմական առաջադիմական միտումները՝ ազգերի բարգավաճումն ու մերձեցումը, որոնք նախապես ի հայտ են եկել մեր երկրում, այսօր լիարյուն կերպով գործում են որպես սոցիալիստական երկրների, սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների համաշխարհային բարեկամության զարգացման ու գործառնության օրինաչափություն։ ՍՍՀՄ արտաքին ու ներքին քաղաքականության միասնությունն այստեղ ի հայտ է գալիս նաև սոցիալիստական ազգերի, ժողովուրդների, երկրների զարգացման սոցիալ-տնտեսական, կուլտուրական և այլ մակարդակների հավասարեցման ինտերնացիոնալիստական քաղաքականության հաջորդայնության մեջ։

ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունն ինտերնացիոնալիստական է։ Դա առանձնապես ցայտուն կերպով է դրսևորվում սոցիալիստական պետությունների այն օգնության ու աջակցության մեջ, որ ցույց է տրվում ժողովուրդներին՝ ազգային ազատագրության, սոցիալական առաջընթացի համար իմպերիալիստական հարկադրանքի, անեքսիաների դեմ մղվող պայքարում։ ՍՍՀՄ արտաքին քաղաքականությունը խորապես ներթափանցված է ինտերնացիոնալիզմով նաև այն դեպքում, երբ միջազգային քաղաքական ու տնտեսական հարաբերությունների հետագա դեմոկրատացման համար հանուն լարվածության թուլացման, խաղաղության, զինաթափման մղվող պայքարում լուծում է համամարդկային պրոբլեմներ։

Խաղաղության և լարվածության թուլացման պայքարը կոչված է բարե-



նպաստ պայմաններ ստեղծելու սոցիալիզմի զարգացման ու ամրապնդման, դրա սոցիալ-տնտեսական ու կուլտուրական հետագա առաջընթացի համար։ Դա «նախ և առաջ պայքար է հանուն այն բանի, որ սովետական ժողովրդին անհրաժեշտ արտաքին պայմաններ ապահովվեն նրա առջև ծառացած ստեղծարար խնդիրների լուծման համար» (Նույն տեղը, էջ 5—6)։ Սոցիալիզմի տնտեսական առաջընթացի հետ են կապված ինչպես ընդհանուր հեղափոխականացնող ներգործության ուժեղացումն աշխարհի վրա, այնպես էլ ազատագրական ուժերին կոնկրետ ինտերնացիոնալ օգնություն ցույց տալու հնարավորության մեծացումը։ Լարվածության թուլացման քաղաքականությունն իր սուր ծայրով ուղղված է ընդդեմ առավել ռեակցիոն արդի իմպերիալիզմի «հակակոմունիստական և էքսպանսիոնիստական» ուժերի, ընդդեմ ռազմաարդյունաբերական կոմպլեքսի և այլն, նպաստում է նրանց մերկացմանը, ինչպես նաև «սովետական սպառնալիքի», «կոմունիստական ագրեսիայի» մասին առասպելների մերկացմանը։ Այդ իսկ պատճառով լարվածության թուլացման խորացումը կարող է նպաստել կոմունիստական կուսակցությունների հեղինակության և ազդեցության աճին, հեղափոխական բանվորական շարժման խորացմանը՝ ռեակցիայի և միլիտարիզմի դեմ մղվող պայքարում։

Ինչ վերաբերում է ազգային-ազատագրական պայքարին, ապա լարվածության թուլացման խորացումը, միջազգային կյանքում դրա սկզբունքների հաստատումը լուրջ արգելք են իմպերիալիզմի նեոգաղութատիրական էքսպանսիայի ռազմաքաղաքական ձևերի, հարկադրանքի, հակահեղափոխության արտահանման կիրառման ճանապարհին։ Վերջին ժամանակների իրադարձությունները ցույց են տալիս, որ նեոգաղութատիրական ուժերի էքսպանսիոնիզմի ուժեղացումը (անգլո-արգենտինյան պատերազմական կոնֆլիկտը, Իսրայելի ներխուժումը Լիբանան և այլն) զարգանում է, ասես, միաժամանակ, ողջ իմպերիալիստական քաղաքականությունը դեպի «սառը պատերազմ» և առճակատում շրջելու հունով։ «Սառը պատերազմի» քաղաքականությունը, որի վկայությունն է, օրինակ, 50-ական թվականների պատմությունը, անտեսում է ազատագրված երկրների սուվերենությունը, արհամարհում և ոտնահարում է ժողովուրդների օրինական իրավունքները։ Իսկ լարվածության թուլացման քաղաքականությունը, նրա ոգին, իրացման հնարավորությունները նպաստում են միջազգային գործերում ազատագրված երկրների դերի մեծացմանը, պատերազմի ու խաղաղության ճակատագրի լուծմանը, սոցիալական առաջընթացին։

Խաղաղ գոյակցության սկզբունքը համաշխարհային ասպարեզում կատարում է զանազան ինտերնացիոնալ ֆունկցիաներ։ Սովետական արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման բնագավառում համաշխարհային հեղափոխական պրոցեսի այդ ջոկատներին պետականորեն կազմակերպված բանվոր դասակարգի կողմից ցույց տրվող օգնությունն է, որն իրականացվում է խաղաղ գոյակցության քաղաքականության միջոցով։ Հիրավի, ինտերնացիոնալիզմը ոչ թե սոցիալիզմի արտաքին քաղաքականության առանձին ուղղություն կամ տարր է, այլ նրա բոլոր ուղղությունները ցեմենտող էությունը։

Սովետական արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը հատկապես լիակատար և բազմակողմանիորեն է դրսևորվում ՍՍՀՄ-ի և սոցիալիստական երկրների փոխհարաբերություններում։ ՍՄԿԿ XXVI համագումարը, խորապես վերլուծելով համաշխարհային սոցիալիստական բարեկամության զարգացումը, նշեց, որ ձևավորվում ու զարգանում է իրոք արդարացի, իրավահավասար, եղբայրական պետությունների հարաբերությունների՝ պատմության մեջ աննախադեպ մի տիպ։ Այդ հարաբերությունների բնորոշ առանձնահատկությունն այսօր նրանց մերձեցման, համակողմանի համագործակցության պրոցեսն է։ Այդ պրոցեսը, սոցիալ-տնտեսական զարգացման և միջազգային քաղաքականության բոլոր խոշոր պրոբլեմների հարցում հիմնվելով կառավարող կոմունիստական կուսակցությունների հայացքների և սկզբունքային միասնության, դրանց մշտական համագործակցության վրա, այսօր դրսևորվում է որպես օրինաչափություն։ Այդ պրոցեսը, համաշխարհային սոցիալիստական

կերպված բանվոր դասակարգի ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությունը գործ ունի պետականորեն կազմակերպված ձևերում ու շրջանակներում զարգացող հակաիմպերիալիստական պայքարի և հեղափոխական պրոցեսի հետ։ Ստեղծվում են աննախադեպ հնարավորություններ դասակարգային դաշինքի ստեղծման ու ամրապնդման համար, ընդ որում ավելի բարձր՝ պետականորեն կազմակերպված ազգային-ազատագրական շարժման մակարդակի։ Այնուհետև, սոցիալիզմի ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությունն այժմ ձեռք է բերում գործելու հատկապես բարեբեր դասակարգային հիմք՝ ի դեմս հակաշահագործողական սոցիալ-դասակարգային ուժերի, որ իշխանության գլուխ են կանգնած մոտ երկու տասնյակ պետություններում և կարևոր դեր են խաղում գրեթե բոլոր ազատագրված երկըրներում։

Այսպիսով, արտաքին քաղաքականության մեջ ինտերնացիոնալիզմն իր բովանդակությամբ շատ ավելի լայն ու հարուստ է, քան պարզապես համերաշխությունը կամ համաշխարհային հեղափոխական ուժերի ակտիվ ու համակողմանի օգնությունը, քանի որ այն բովանդակում է պետությունների և ժողովուրդների սկզբունքորեն նոր տիպի հարաբերությունների հիմնական նորմերը։ Որպես սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության դեմոկրատիզմի համապարփակ սկզբունք, որը հաստատում է սուվերենությունը և իրավահավասարությունը, անեքսիաների, բռնության ու պատերազմների դեմ ժողովուրդների հարստահարման ու շահագործման դեմ մղվող պայքարը, ՍՍՀՄ արտաքին քաղաքականության ինտերնացիոնալիզմը ազգային-ազատագրական պայքարի գոտիներում ունի սոցիալիստական վիթխարի ներունակություն։ Միջպետական հարաբերություններում պահանջելով հետևողական դեմոկրատիզմ, այն հիմքերն է դնում բարեկամության ու համագործակցության հարաբերությունների, որոնք ազգային-ազատագրական հեղափոխությունների խորացման, սոցիալիստական կողմնորոշման ուղիով ավելի ու ավելի շատ երկրների զարգացման համեմատ միտում ունեն վերաճելու սոցիալիստական տիպի միջպետական հարաբերությունների։ ՍՍՀՄ ինտերնացիոնալիստական արտաքին քաղաքականությունը դառնում է ժողովուրդների պայքարի, սոցիալիզմի առավելությունների ցուցադրման վրա սոցիալիզմի ընդհանուր գաղափարախոսական հեղափոխականացնող ներգործության կարևոր տարր։

Համագործակցության հատկապես սերտ ու համակողմանի հարաբերություններ են հաստատվել ՍՍՀՄ-ի և սոցիալիստական կողմնորոշման երկրների միջև, հարաբերություններ, որոնք ընդգրկում են այդ պետությունների կենսագործունեության բոլոր ոլորտները՝ տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական, դիվանագիտական, ռազմական։ Սոցիալիստական կողմնորոշման մի շարք երկրների հետ Սովետական Միության կնքած բարեկամության ու համագործակցության պայմանագրերը, ամրապնդելով նրանց սուվերենությունը, պաշտպանունակությունը, կարևոր երաշխիք ու պայմաններ են ստեղծում դրանցում հեղափոխական պրոցեսների խորացման համար։ Ինչ վերաբերում է տնտեսական համագործակցությանը, ապա դա նպաստում է նրանց պետական սեկտորի ամրապնդմանը, հեղափոխական իշխանության տնտեսական բազիսի զարգացմանը։

Ազատագրված երկրների հետ ՍՍՀՄ-ի իրավահավասար ու փոխշահավետ համագործակցությունը նպաստում է այդ երկրներում տնտեսության ու պրակտիկայի հեղափոխականացնող ներգործությանը, մարդկանց մտքերի, աշխատավորության դասակարգային հեղափոխական ինքնագիտակցության աճի վրա սոցիալիզմի պատմական փորձի խորացմանը։ Ժողովուրդները տեսնում են, որ սոցիալիզմը, իրոք, այսօր մեծապես օգնում է ազգային-ազատագրական պայքարի հիմնական խնդրի լիակատար լուծմանը՝ փաստացի ազգային ազատագրմանը, ամենից առաջ տնտեսական, սոցիալական առաջընթացին։ Այդ հիման վրա մշտապես ամրապնդվում է սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման դաշինքը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻ ԱՎԱՆԴԸ

**Ե. Կ. ԽԱՐԱՁԵ**
Վրացական ՍՍՀ ԳԱ պրեզիդենտ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ Հանրապետությունների Միությունը բոլորեց իր կազմավորման 60-ամյակը՝ նշանակալի մի տարելից եղբայր ժողովուրդների համար։ Կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ընձեռած աննախադեպ բարենպաստ պայմանների շնորհիվ գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում վիթխարի վերելք ապրեց ստեղծարար գործունեությունը։ Եղբայրական ժողովուրդների հետ միավորվելով Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմում՝ վրաց ժողովուրդը մեծ հաջողությունների հասավ ժողովրդական տնտեսության, սոցիալական ու հոգևոր կյանքի բոլոր ասպարեզներում։

Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ վկայությունն են Հանրապետության գիտական մտքի կենտրոնի՝ Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ստեղծումը, Սովետական Վրաստանի գիտության զարգացումն ու ծաղկումը։

Բազմազան են Վրաստանի բնական պայմանները, բնական պաշարներով հարուստ է երկիրը։ Ահա ինչու այնպես անհրաժեշտ են ծավալուն հետազոտությունները բնական ու տեխնիկական գիտությունների բնագավառներում։ Վրաց ժողովրդի նյութական ու հոգևոր կուլտուրայի բազմադարյան հարուստ ժառանգությունն անսպառ աղբյուր է պատմաբանասիրական, հնագիտական, լեզվաբանական և գիտական այլ բնագավառների զարգացման համար։

Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիան հանրապետության հիմնարար և կիրառական գիտական հետազոտությունների խոշոր կենտրոն է, որտեղ ներկայացված են ժամանակակից գիտության բազում ասպարեզներ և ուղղություններ, որոնք սերտորեն առնչված են տնտեսական ու կուլտուրական շինարարության հրատապ խնդիրների հետ։ Այն ունի համընդհանուր ճանաչման արժանացած գիտական դպրոցներ։

Մեծ համբավ են վայելում վրաց մաթեմատիկոսների ու մեխանիկների հիմնարար հետազոտությունները։ Ֆիզիկոս-գիտնականները տեսական ու փորձնական հետազոտություններ են կատարում ցածր ջերմաստիճանի և կարծըր մարմինների ֆիզիկայի, պլազմաների, տարրական մասնիկների ֆիզիկայի, կարծր մարմինների ճառագայթային ֆիզիկայի և կենսաֆիզիկայի ասպարեզներում։

Աստղաֆիզիկայի և աստղագիտության բնագավառի հետազոտությունների զարգացման սկիզբը դրվեց 30-ական թվականներին, Աբասթումանի Կանոբիլ լեռան վրա ՍՍՀՄ առաջին աստղաֆիզիկական բազայի ստեղծմամբ, որը հետագայում վերածվեց աստղագիտական բազմապրոֆիլ հաստատության։ Գեոֆիզիկայի, երկրաբանության և աշխարհագրության բնագավառների հետազոտությունները նպաստում են Հանրապետության բնական հարստությունների արդյունավետ օգտագործմանը։

Երկրաբանական հետազոտությունները ներառնում են հնէաբանության և

շերտագիտության, տեկտոնիկայի, քարագրության, հրաբխագիտության, նստվածքաբանության, երկրաքիմիայի, հանքավայրերի երկրաբանության, քաբանության, ռադիոերկրաժամանակագրության, հիդրոերկրաբանության և ինժեներական երկրաբանության հարցերը։ Քիմիական պրոֆիլի ինստիտուտներն ուսումնասիրում են հանրապետության բնական հարստությունները, մշակում դրանք ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու ռացիոնալ եղանակներ։ Դեղագործ-քիմիկոսները Վրաստանի բուսական և հանքային հումքի հիման վրա ստեղծում են բուժիչ նոր պատրաստուկներ։ Մետաղագործներն ուսումնասիրում են մետաղագործական պրոցեսների ֆիզիկաքիմիական օրինաչափությունները, ինչպես և նոր պողպատների ու համաձուլվածքների ստեղծման հնարավորությունները։

Սովետական տարիներին, սոցիալիստական շինարարության վիթխարածավալ ծրագրերի իրականացման առնչությամբ, կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության հոգածության շնորհիվ Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ցանցում ժամանակին ստեղծվեցին տեխնիկական, կիրառական պրոֆիլի ինստիտուտներ։ Այդ հնարավորություն ընձեռեց հետազոտություններ կատարելու շինարարական մեխանիկայի և կառույցների սեյսմակայունության, օգտակար հանածոների հանքավայրերի մշակման ու դրանց հարստացման, արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման, մեքենաների մեխանիկայի և այլ բնագավառներում։

Զարգանում են նաև գիտական նոր ուղղությունները— կիբեռնետիկան և ավտոմատ կառավարման տեսությունը, կենսաբանական գիտության այնպիսի բնագավառներ, ինչպես՝ բուսաբանությունը, բույսերի բիոքիմիան, կենդանաբանությունը, հնէաբանությունը։ Սովետական իշխանության տարիներին գիտահետազոտական լայն աշխատանքներ են ծավալվել հասարակական գիտությունների ինչպես ավանդական, նույնպես և շատ նոր ասպարեզներում։

Վրաց պատմաբանները մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների լույսի ներքո լուսաբանում են Վրաստանի պատմության կարևորագույն պրոբլեմները՝ դասակարգերի և պետության ծագումից սկսած մինչև բանվոր դասակարգի ձևավորումը, հեղափոխական շարժման պատմությունը, սովետական իշխանության հաղթանակը և սոցիալիստական հասարակարգի կառուցումը։ Զգալի տեղ է գրավում Ռուսաստանի, Մերձավոր Արևելքի և Եվրոպայի երկրների հետ Վրաստանի փոխհարաբերությունների ուսումնասիրությունը։ Փիլիսոփայության ինստիտուտում ուսումնասիրվում են սոցիալիստական հասարակարգի, այդ հասարակարգի մարդու օրինաչափ զարգացման, մշակույթի արժույթների փիլիսոփայական պրոբլեմները։

Տնտեսագիտության և իրավունքի ինստիտուտում հետազոտվում են հանրապետության տնտեսության կառուցվածքը, բացահայտվում հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման ուղիները. ուսումնասիրվում են պետական, քաղաքացիական ու քրեական իրավունքի առանձին պրոբլեմներ, վրացական պետության և իրավունքի պատմությունը։

Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ վկայությունն է գիտահետազոտական աշխատանքների բուռն զարգացումը նաև ինքնավար հանրապետություններում՝ Աբխազիայում (ք. Սուխումի) և Աջարիայում (ք. Բաթումի), ինչպես և Հյուսիս-Օսեթական ինքնավար մարզում (ք. Ցխինվալի)։ Վրաց գիտնականները լավ են գիտակցում այն ճշմարտությունը, որ գիտական նոր գաղափարների պրակտիկ ներդրումն այսօր ոչ պակաս կարևոր խնդիր է, քան դրանց մշակումը։ Մեր ակադեմիան ջանում է սերտացնել գիտության ու արտադրության կապը, հատկապես ՎՍՍՀ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի հետ մշակած նպատակային կոմպլեքս ծրագրերի իրականացման միջոցով։

Վրացական գիտությունը զարգանում է Մոսկվայի, Լենինգրադի, Միության բոլոր հանրապետությունների գիտական կենտրոնների հետ սերտ համագործակցած։ Համատեղ գիտահետազոտական լայն աշխատանքներ են կատարում անդրկովկասյան հանրապետությունների գիտական հաստատությունները։



Շատ օրինակներ կարելի է բերել Վրաստանի և Հայաստանի գիտնականների ստեղծագործական համագործակցության վերաբերյալ։ ՎՍՍՀ ԳԱ Ա. Ի. Ջանելիձեի անվան երկրաբանության ինստիտուտը Հայկական ՍՍՀ ԳԱ երկրաբանության ինստիտուտի հետ համատեղ հետազոտություններ է ծավալել Վրաստանի ռեգիոնալ հանքաբանության բնագավառում։ Վրացական ՍՍՀ ԳԱ հիդրոերկրաբանության և ինժեներական երկրաբանության բաժանմունքը կազմում է Կովկասի հիդրոերկրաբանական քարտեզը. այդ աշխատանքներին, այլ կազմակերպությունների հետ, ակտիվ մասնակցում են ՍՍՀՄ երկրաբանության մինիստրության, Հայկական ՍՍՀ երկրաբանության վարչությունը և Երևանի պետական համալսարանը։

Գ. Ա. Ծուլուկիձեի անվան լեռնային մեխանիկայի ինստիտուտը Հայկական ՍՍՀ ԳԱ գունավոր մետաղների ինստիտուտի հետ համատեղ բեղմնավոր հետազոտություններ է ծավալել օգտակար հանածոների կորզման ու վերամշակման տեխնոլոգիայի կատարելագործման նպատակով։

Պ. Գ. Մելիքիշվիլու անվան քիմիայի գ/հ ինստիտուտը Երևանի քիմիական ռեակտիվների և գերմաքուր քիմիական նյութերի համամիութենական գ/հ ինստիտուտի հետ կատարում է համատեղ հետազոտություններ, որոնց արդյունքները տպագրվում են Վրացական ՍՍՀ և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիաների գիտական հանդեսներում։ ՍՍՀՄ 50-ամյակի անվան մետալուրգիայի ինստիտուտը, Հայկական ՍՍՀ գունավոր մետաղների գիտահետազոտական ինստիտուտի և Երևանի պետական համալսարանի հետ մեկտեղ ուսումնասիրում է Ալավերդու պղնձարտադրության կոնվերտորային փոշու կոմպլեքսային վերամշակման տեխնոլոգիան։

Վրացական ՍՍՀ ԳԱ և Հայկական ՍՍՀ ԳԱ բուսաբանության ինստիտուտները համատեղ կազմել են Անդրկովկասի ագրոերկրաբուսաբանական քարտեզը և սպորավոր բույսերի մի քանի խմբերի տեղեկատու։

1979 թվականին Գ. Ն. Չուբինաշվիլու անվան վրացական արվեստի պատմության ինստիտուտի նախաձեռնությամբ Թբիլիսիում կայացավ վրացական և հայկական արվեստների պատմության մասնագետների համատեղ գիտական կոնֆերանս։ 1974 թվականից սկսած, տարին մեկ անգամ, Անդրկովկասի փիլիսոփաները հավաքվում են գիտական համաժողովի։ 1980 թվականին Երևանում անցկացվեց Անդրկովկասի փիլիսոփաների գիտական կոնֆերանս՝ նվիրված ինտերնացիոնալիզմի պրոբլեմներին։ Թբիլիսիում, Երևանում և Բաքվում կազմակերպվում են Անդրկովկասի հոգեբանների ամենամյա խորհրդակցություններ, հրապարակվում են խորհրդակցության թեզիսներն ու նյութերը։

1980 թվականին Երևանում կայացավ Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի Հր. Աճառյանի անվան լեզվի ինստիտուտի և Վրացական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի լեզվաբանության ինստիտուտի երիտասարդ գիտական աշխատողների և ասպիրանտների գիտական համատեղ կոնֆերանս՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակին և Հայաստանի սովետականացման 60-ամյակին։ Վերջերս Երևանում տեղի ունեցավ միջազգային համաժողով՝ «Հայոց լեզվի պատմության հարցերը» թեմայով, որի աշխատանքներին մասնակցում էին նաև մեր լեզվաբանները։

Շոթա Ռուսթավելու անվան վրացական գրականության պատմության ինստիտուտում երկար տարիներ ուսումնասիրվում են հայ-վրացական գրական փոխադարձ կապերը։ Վրաստանի պետական թանգարանը խոշոր գիտական կենտրոն է և բնական ու հումանիտար գիտությունների տարբեր բնագավառների գիտելիքների պրոպագանդման կարևոր օջախ։

Կենսագործելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները՝ Վրաստանի գիտնականներն արժանի ավանդ են ներդնում գիտատեխնիկական առաջընթացի արագացման, կոմունիստական շինարարության հրատապ խնդիրների լուծման բնագավառում։

---

# ԿՈՒՌ ՄԻԱԲԱՆՈՒԹՅԱՄԲ

Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ

ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՎԱԹՍՈՒՆԱՄՅԱ հոբելյանը նշանակալի իրադարձություն է սովետական ժողովրդի կյանքում, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, սոցիալիզմի պատմական հասումների պերճախոս վկայությունը։ Այդ պանծալի տարելիցին մեր երկիրը ողջ աշխարհի առջև հառնում է որպես համատեղ կոմունիզմ կառուցող իրավահավասար հանրապետությունների համերաշխ ընտանիք։ Կուռ է սոցիալիստական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միաբանությունը։ Աներեր է սովետական ժողովրդի համախմբվածությունը հարազատ կոմունիստական կուսակցության շուրջը։ Կուսակցության ու ժողովրդի միասնությունը մեր բազմազգ տերության բոլոր հաջողությունների գրավականն է։ Այդ մասին առանձնակի շեշտեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Յու. Վ. Անդրոպովը ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան արտահերթ պլենումում։

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ լինել ինտերնացիոնալիստ, նշանակում է «մտածել ոչ միայն իր ազգի մասին, այլ **նրանից ավելի բարձր** դասել բոլորի շահերը»։ Նա սովորեցնում էր պայքարել մանր ազգայնական պարփակվածության, մեկուսացվածության դեմ։ Հավատարիմ լենինյան պատգամներին, կուսակցությունն աշխատավորությանն ուսուցանում է ամեն կարգի ազգային պրոբլեմների նկատմամբ դրսևորել դասակարգային վերաբերմունք։ Կուսակցությունն անում է ամեն բան, որպեսզի յուրաքանչյուր սովետական մարդ խորապես գիտակցի, թե ինտերնացիոնալ պարտքի կատարումը այսօր գործնականում նշանակում է ամենից առաջ բարեխիղճ, նախաձեռնողական, ստեղծագործական աշխատանք ընդհանուրի բարօրության համար, աշխատանքի արդյունավետության և որակի ըստ ամենայնի բարձրացում, ակտիվ մասնակցություն համաժողովրդական խնդիրների լուծմանը, մեր պետության, համաշխարհային սոցիալիստական ընկերակցության տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդմանը։

Հիրավի, հանուն ազատության պայքարում, հեղափոխական արարման ընթացքում, սոցիալիստական շինարարության պրակտիկայում ձևավորվեց ու կոփվեց սովետական մարդը։ Իր աշխատանքային սխրանքներով ու ստեղծագործական ավյունով, Մեծ հայրենականի դաժան փորձություններում անասելի տոկունությամբ ու արիությամբ, ողջ աշխարհի դասակարգային եղբայրների ճակատագրին իր անշահախնդիր մասնակցությամբ, սովետական մարդն ապացուցեց իր խոր նվիրվածությունը կոմունիզմի իդեալներին, իր բոցաշունչ հայրենասիրությունը և ինտերնացիոնալիզմը։ Նա իր մեջ միացնում է գաղափարական համոզվածությունը և վիթխարի կենսական եռանդը, մշտապես ձգտում իմացության ու կուլտուրայի բարձունքներին, ստեղծում կոլեկտիվիզմի ու ընկերական փոխօգնության մթնոլորտ։ Սովետական մարդը ջերմորեն սիրում է իր սոցիալիստական հայրենիքը, նրա ողջ կյանքի իմաստը դարձել է ոգեշունչ աշխատանքը հանուն կոմունիզմի։



Սոցիալիստական հասարակության անդամների գործունեությունը և վարքագիծը բնորոշվում են տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական, գաղափարախոսական պայմանների ողջ կոմպլեքսով։ Եվ այդ հիման վրա մշակվում են անհատի սոցիալիստական կողմնորոշման որոշակի հատկանիշներ։ Դա ձեռք է բերվում հասարակության անդամներին ներգրավելով սոցիալիստական արտադրության ոլորտը, հասարակական ու պետական կառավարման գործերում։ Միաժամանակ՝ տնտեսական ու բարոյական խթանման լծակների միջոցով վերաբերմունք է մշակվում հասարակական սեփականության նկատմամբ։ Այդ կոմպլեքսն իրականացվում է ուսուցման ու դաստիարակության համապետական համակարգի միջոցով, գիտական, մարքս-լենինյան աշխարհայացքի, կոմունիստական բարոյական սկզբունքների ու նորմերի պրոպագանդումով, ըստ ամենայնի խրախուսելով բարեխիղճ աշխատանքը, բարոյական բարձր վարքագիծը, հասարակական կարծիքի ու օրենքի ուժով ժողովրդի շահերի պաշտպանությունը։ Նոր մարդու ձևավորումը կատարվում է կոմունիզմի կառուցմանն ակտիվ մասնակցության պրոցեսում։ Այստեղ, անշուշտ, մեծ է կուսակցության, պետության, հասարակական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքի ողջ համակարգի ներազդման դերը՝ տնտեսական ու հասարակական կյանքում արմատավորելու կոմունիստական նորմերը։

Այսպիսով, անհրաժեշտ է ստեղծել ու զարգացնել հասարակական այնպիսի ձևեր, կենսապայմաններ, երբ մարդիկ ոչ թե սոսկ ֆիքսում են սոցիալիստական հասարակության սկզբունքների ու նորմերի առկայությունը, այլ դրանք ընկալում իբրև բնականոն իրողություն։ Հասարակության և առանձին մարդկանց շահերի փոխհարաբերության տեսական լուծումը տրված է գիտական կոմունիզմի ուսմունքում։ Կոմունիզմը մի հասարակություն է, որտեղ յուրաքանչյուրի շահը, բարօրությունը, երջանկությունն անխզելիորեն կապված են մյուսների բարօրության հետ, որտեղ հասարակական շահն արդեն չի տարբերվում ամեն մի առանձին անձի շահից (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 535, 538)։

Սոցիալիզմն արդեն սկզբունքորեն լուծում է այդ խնդիրը, չնայած ոչ ներհակ, սակայն սուր բնույթի հակասությունները հասարակության ու անհատի միջև տակավին մնում են։ Նման լուծման հիմքը դասակարգերի, սոցիալական խմբերի արմատական շահերի ընդհանրությունն է։ Անձնական շահը առնչվում է մարդու սեփական նյութական ու հոգևոր պահանջմունքների, այսինքն՝ նրա ուժերի և ունակությունների զարգացման, կյանքի պահպանման ու ապահովման, նրա հակումների ու ցանկությունների իրականացման հետ։ Քանզի մարդը հասարակական էակ է, նրա շահերի շրջանակը չի սահմանափակվում սոսկ սեփական բարեկեցիկությամբ, անձնական գործերով։

Անձի դրությունն ընտանիքում, կոլեկտիվում, դասակարգային ու ազգային պատկանելությունը անխուսափելիորեն նրա շահերը դուրս են բերում զուտ անձնականի շրջագծից, ստիպում հոգալ ընդհանուրի պրոբլեմները, մասնակցել դրանց լուծմանը։ Դա բացատրվում է այն իրողությամբ, որ անձնական շահերի բավարարումը սերտորեն առնչվում է հասարակական խնդիրների հետ։ Կարևոր է և այն, որ հասարակական պարտքի զգացումը, դասակարգային համերաշխությունը, ազգային հպարտությունը, հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը մարդուն ձևավորում են որպես բարոյական անհատ։ Ոչ միայն անձնական գործերը, այլև հասարակական պրոբլեմները, առավել կամ պակաս չափով, անխուսափելիորեն տեղ են գտնում անհատի շահախնդրությունների շրջանակում։

Սոցիալիստական հասարակության մեջ այն ամենը, ինչ պատկանում է ընդհանուրին, նաև յուրաքանչյուրինն է։ Հասարակական սեփականությունը լայն ճանապարհ է հարթում արտադրաուժերի զարգացման համար, դրանով իսկ հնարավորություն ընձեռելով հասարակության արագ, համակողմանի առաջընթացին։ Հասարակական արտադրության աճի շնորհիվ ամրապնդվում են սոցիալիստական հայրենիքի էկոնոմիկան ու պաշտպանական հզորությունը,

էության համընկնում է ինտերնացիոնալ գիտակցությանը։ Նոր մարդու հա-
մար լինել հայրենասեր ու ինտերնացիոնալիստ, դա նշանակում է սեփական
աշխատանքով, յուրաքանչյուր կոլեկտիվի ու յուրաքանչյուր մարդու ջանքերով
բազմապատկել սոցիալիստական հայրենիքի հարստությունը, ամրապնդել նրա
տնտեսական-պաշտպանական հզորությունը։ Միաժամանակ այն ենթադրում
է ամենուր սատար լինել բոլոր ազգերի աշխատավորներին, հարգել ամեն մի
ազգի արժանապատվությունը, առանձնահատկությունները, ուշադիր վերաբեր-
մունք ցուցաբերել նրա ակնկալիքների նկատմամբ, վճռաբար պայքարել շո-
վինիզմի ու նացիոնալիզմի դրսևորումների դեմ։ Մեր մարդկանց գիտակցու-
թյան մեջ սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիո-
նալիզմի գաղափարների հաստատումը մշտապես եղել ու մնում է կոմունիս-
տական կուսակցության հիմնական խնդիրներից մեկը։
Սոցիալիստական հասարակության ինստիտուտները (պետություն, կու-
սակցություն, կոմերիտմիություն, արհմիություն և այլն) մարդիկ ընկալում են
իբրև իրենց հարազատ կազմակերպություններ, որոնց գործունեության նպա-
տակը աշխատավոր մարդն է։ Մարդկային անհատի սոցիալական չափանիշ-
ներն են՝ գաղափարայնությունը, աշխատանքը, գիտելիքները, բարոյական ար-
ժույթները, անկախ նրա նյութական դրությունից, ծագումից, ազգային պատ-
կանելությունից։ Այսպիսով, սոցիալիստական տիպի անհատի գիտակցությունն
ու վարքագիծը բնութագրում են այնպիսի հատկանիշներ, ինչպիսին են՝ կոլեկ-
տիվիզմը, ինտերնացիոնալիզմը, ժողովուրդների միջև եղբայրությունն ու բա-
րեկամությունը և այլն, որոնց ակունքները սոցիալիստական իրականությունն
է, նրա սոցիալ-տնտեսական բազիսը։
Սոցիալիզմը ռեալ հումանիզմի հասարակություն է, որի գլխավոր արժույ-
թը աշխատանքի մարդն է։ Ամեն ինչ մարդու բարօրության, հանուն մարդու,
այդպիսին է սոցիալիստական ապրելակերպի նշանաբանը։ Իր սոցիալական
ֆունկցիայով լինելով համաժողովրդական, սոցիալիստական բարոյականու-
թյան միջուկը բանվոր դասակարգի բարոյական նորմերն ու սկզբունքներն են,
որոնք հասուն սոցիալիզմի պայմաններում դարձել են սովետական հասարա-
կության բոլոր խավերի սեփականությունը։ Ամբողջացվելով կոմունիզմ կառու-
ցողի բարոյական կոդեքսում, դրանք հաստատում են մարդկանց սոցիալիս-
տական համակեցության կազմակերպման կոլեկտիվիստական հիմքերը։
Բանվոր դասակարգի բարոյական արժույթների առանձնահատուկ նշա-
նակությունը սովետական հասարակության զարգացման արդի փուլում բացա-
տրվում է օբյեկտիվ պատճառներով, առաջին հերթին կոմունիստական շինա-
րարության պրոցեսում բանվոր դասակարգի դերի աճով։ Վերջինս կոմունիս-
տական հասարակության կառուցման առաջատար ուժն է, որն ստեղծում է
հասարակական արդյունքի ամենամեծ բաժինը, գտնվում տեխնիկական առաջ-
ընթացի առաջավոր բնագծերում։ Կոմունիստական կուսակցության ղեկավա-
րությամբ, բոլոր աշխատավորների հետ միասին բանվոր դասակարգը ստեղ-
ծում ու բազմապատկում է նյութական ու հոգևոր արժույթները։ Զարգացած
սոցիալիզմի բանվոր դասակարգը աչքի է ընկնում կրթության ու կուլտուրայի
պատշաճ մակարդակով, բարձր գիտակցականությամբ։ Նրա կրթական, գի-
տատեխնիկական ու կուլտուրական մակարդակի աճը սոցիալական զարգաց-
ման կարևոր նախադրյալներից է։ Ինչպես նշվեց կուսակցության XXVI հա-
մագումարում, բանվորներն այժմ կազմում են աշխատավոր ժողովրդի մեծա-
մասնությունը։ Մշտապես աճում է բանվորների հասարակական ակտիվությու-
նը և քաղաքական հասունությունը։ Նրանցից յոթ միլիոնը ՍՄԿԿ անդամներ են
(43,4 տոկոս)։ Սովետների բոլոր աստիճանների կազմում բանվորների բաժինը
42 տոկոս է։ Իրավամբ զբաղեցնելով առաջատար տեղ արտադրական, պետա-
կան, քաղաքական կառավարման համակարգում, բանվոր դասակարգը հան-
դես է գալիս նաև որպես նոր բարոյական նորմերի ակտիվ արարիչ։ Այդ նոր-
մերից բխող նոր բարոյական հարաբերություններն առավել ճիշտ են արտա-
ցոլում հասուն սոցիալիզմի էությունը։
Կոմունիզմի գործին նվիրվածության սկզբունքը զարգացած սոցիալիս-
տական հասարակության բարոյական արժույթների համակարգի բարձրագույն



աստիճանն է։ Դրանից են բխում հասարակության մյուս բարոյական սկզ-
բունքներն ու նորմերը։ Նվիրվածությունը կոմունիզմի գործին դրսևորվում է
կոլեկտիվի ու հասարակության առջև սեփական պարտքի խոր գիտակցմամբ,
անձնական շահերը հասարակականին ենթարկելու կարողությամբ, ինչպես
նաև աշխատանքի նկատմամբ գիտակցական վերաբերմունք, ջերմ հայրենա-
սիրություն ու ինտերնացիոնալիզմ, բարձր քաղաքական կուլտուրա, կոլեկտի-
վիզմ, ընկերասիրության զգացում, հասարակական հարաբերությունների մըշ-
տական կատարելագործման ձգտում մշակելով։ Սովետական մարդու մաս-
նակցությունը կոմունիզմի կառուցման գործին դառնում է բարոյականության
կարևոր չափանիշը։
Բանվոր դասակարգի առաջնակարգ բարոյական արժույթը աշխատանքն է,
հասարակության զարգացման աղբյուրը, սոցիալիստական անհատի կենսա-
գործունեության հիմնական ոլորտը։ Սովետական իրականությունը աշխա-
տանքի մարդկանց հասարակություն է, ուստի կուսակցությունն ու պետությու-
նը մեծ ջանքեր են գործադրել ու գործադրում, որպեսզի մարդու աշխատանքը
դարձնեն ոչ միայն արտադրողական, այլև բովանդակալի, հետաքրքրական,
ստեղծագործական։
Կ. Մարքսը նկատել է, թե մարդկային էութենական ուժերի բացահայ-
տումը առաջին հերթին իրականացվում է աշխատանքային գործունեության
մեջ։ Հասարակական կյանքի բոլոր կողմերի ինտերնացիոնալացումը հասա-
րակական առաջընթացն արագացնող կարևոր գործոններից է։ «Կյանքը հա-
մոզում է,— նշվեց կուսակցության XXVI համագումարում,— որ մեր հան-
րապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական ինտենսիվ
զարգացումը արագացնում է դրանց բազմակողմանի մերձեցման պրոցեսը։
Տեղի են ունենում ազգային կուլտուրաների ծաղկում ու փոխհարստացում,
սոցիալական ու ինտերնացիոնալ նոր հանրության, միասնական սովետական
ժողովրդի կուլտուրայի ձևավորում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ
92)։ Հիրավի, սոցիալիստական հասարակության մեջ բանվոր դասակարգը
հանդես է գալիս իբրև վճռական ուժ, դա օրինաչափ է, քանզի «պրոլետարները
զանգվածաբար արդեն իրենց բնույթով ազատ են ազգային նախապաշար-
մունքներից, և նրանց ողջ հոգևոր զարգացումն ու շարժումն ըստ էության հու-
մանիստական են ու հակաազգայնական։ Միայն պրոլետարները կարող են
ոչնչացնել ազգային մեկուսացվածությունը, միայն արթնացող պրոլետարիա-
տը կարող է տարբեր ազգերի միջև հաստատել եղբայրություն» (К. Маркс,
Ф. Энгельс, Соч., т. 2, стр. 590)։ Սոցիալիստական ապրելակերպը կեն-
սագործունեության այնպիսի եղանակ է, որն ապահովում է բոլոր ազգերի ու
ժողովուրդների փաստական հավասարություն, ծաղկում ու մերձեցում, նպաս-
տում նրանց բարեկամության ամրապնդմանը։
Սովետական ապրելակերպում ինտերնացիոնալիստականի ու ազգայինի
դիալեկտիկան այնպիսին է, որ ինտերնացիոնալացումը ոչ միայն չի բացա-
ռում ազգայինի, առանձնահատուկի զարգացումը, այլև, ընդհակառակն, պայ-
մանավորում է սոցիալիստական ազգերի ու նրանց կուլտուրաների ծաղկումը,
քանզի ինտերնացիոնալիստականը ապազգային չէ։ Ըստ Լենինի ինտերնա-
ցիոնալիզմը ոչ միայն չի հակադրվում հայրենասիրությանը, այլև ընդհակա-
ռակն, պայմանավորում է այն և ինտերնացիոնալիստը դրա համար չի կարող
չլինել իր ժողովրդի, իր հայրենիքի ջերմ հայրենասերը։ Հետևաբար, հարկա-
վոր է մարքս-լենինյան դիրքերից լուծել ինտերնացիոնալիստականի ու ազգա-
յինի դիալեկտիկական միասնության պրոբլեմը։ Դասակարգային-պրոլետա-
րական առումով իսկական հայրենասիրությունն օրինաչափորեն հանգում է
ինտերնացիոնալիզմի։
Սովետական մարդկանց կենսագործունեության բոլոր կողմերը տոգորված
են ազգայինի ու ինտերնացիոնալիստականի միասնությամբ, որի տնտեսական
հիմքը միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսն է։ Վերջինս ընդգրկում
է երկրի ողջ արտադրությունը, բաշխումը և փոխանակումը, խարսխվում ՍՍՀՄ
բոլոր ազգերի ու ազգությունների ընդհանուր տնտեսական նպատակների ու
շահերի վրա։ Էկոնոմիկայի այդ առանձնահատկությունն արտացոլում

է նաև սովետական ապրելակերպը, որի կարևոր հատկանիշներից է բոլոր ազգությունների մարդկանց անխախտ բարեկամությունը։

Նման համախմբվածությունը վառ կերպով դրսևորվում է բազմազգ արտադրական կոլեկտիվներում, տարբեր ազգությունների ներկայացուցիչները միմյանց հարստացնում են սեփական ժողովրդի կուտակած փորձով։ Վերջինից ծլարձակում են այն տարրերը, որոնք կենսունակ են, համընկնում են կոլեկտիվի․ աշխատանքային իրադրությանը, կենցաղին, անդամների անձնական հատկանիշներին։ Դրա շնորհիվ սովետական մարդկանց ապրելակերպը դառնում է համաձուլվածք, ներառնելով այնպիսի օրգանական տարրեր, որոնք, լինելով որևէ ժողովրդի ապրելակերպի հատկությունը, ստանում են համընդհանուր ճանաչում։ Աշխատանքային կոլեկտիվներում հաստատվում է այն համոզումը, որ մարդու գնահատման հիմնական չափանիշը նրա գործնական հատկանիշներն են, նրա ստեղծած ավանդը հասարակության բարօրության համար։ Աշխատանքային կոլեկտիվները հանդես են գալիս իբրև սոցիալիստական ապրելակերպի առավել առաջադիմական հատկանիշների արարողներ, որտեղ ամեն մի աշխատավոր սովորում է անտարբեր կերպով չվերաբերվել երկրի գործերին, միջազգային իրադրությանը, սեփական արարքներն ու վարքագիծը գնահատել պետականորեն, հասարակականորեն։ Սովետական հասարակության բոլոր ոլորտներում առաջ են գալիս նոր ավանդույթներ ու արժույթներ, որոնք մարմնավորում են մեր երկրի բոլոր ժողովուրդների գաղափարաքաղաքական ու սոցիալական միասնությունը։

Մեր երկրում մարդկության պատմության մեջ առաջին անգամ ձևավորվեց, իրողություն դարձավ մարդկանց նոր սոցիալական ու ինտերնացիոնալ հանրություն՝ միասնական սովետական ժողովուրդը։ Վերջինս հիմնվում է երկրի կյանքում կատարված խոր տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր փոփոխությունների, դասակարգային ներհակություններից զերծ նոր տիպի հարաբերությունների վրա։

Սոցիալիստական հասարակարգը, արմատապես վերափոխելով սոցիալական կյանքն ու ազգերի փոխհարաբերությունները, հետևողականորեն հաղթահարում է անցյալից ժառանգած նախապաշարումները, բոլոր ազգերին ներարկում փոխադարձ վստահության ու համերաշխության գիտակցություն։

Վ. Ի. Լենինը բազմիցս անդրադարձել է ազգային պրոբլեմների լուծման բարդությանը, հատկապես շեշտել փոքր ժողովուրդների ազգային զգացումների նկատմամբ համբերատարություն ու նրբանկատություն ցուցաբերելու, աստիճանաբար նրանց ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու անհրաժեշտության մասին։ Բայց ամեն մի ազգության կոմունիստներից Լենինը մըշտապես սկզբունքային դիրք է պահանջել ազգային հարցում, այդտեղ թույլ չտալով ոչ մի զիջողություն ու ներողամտություն։ Նա հետևողականորեն պայքարել է կոմունիստների շարքերում նացիոնալիզմի ու մեծապետական շովինիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ։

Սովետական իշխանության առաջին տարիներից երկրի տնտեսական ու սոցիալական քաղաքականությունն այնպես էր իրականացվում, որ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը հնարավորին չափ արագ բարձրացվեին կենտրոնի զարգացման մակարդակին։ Այստեղ, անշուշտ, կարևորագույն դեր խաղացին երկրի բոլոր ազգերի սերտ համագործակցությունը, ամենից առաջ ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությունը։ Ինչպես նշվեց կուսակցության XXVI համագումարում, հետամնաց ազգային ծայրամասեր ներկայումս գոյություն չունեն։ Այժմ երկրի ազգային հանրապետությունները տնտեսության և կուլտուրայի զարգացման շատ ցուցանիշներով գերազանցում են միջին միութենական մակարդակը և հետզհետե առավել ծանրակշիռ ավանդ են մուծում մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի առաջընթացի գործում։

Սովետական ժողովուրդների ընտանիքը դարձել է ավելի համախմբված, ապրում է առավել համերաշխ, անշեղորեն ամրապնդվում է ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, թեև այս օբյեկտիվ պրոցես է, սակայն տարերային չէ։ Այստեղ ուղենիշ դեր են խաղում կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը, յուրաքանչյուր հանրապետության նյութական և



հոգևոր առաջընթացին, երկրի ներդաշնակ զարգացմանն ուղղված նրա անփոփոխ կուրսը։

Կուսակցության XXVI համագումարը սկզբունքային գնահատական տվեց մեր երկրում ազգային հարաբերությունների զարգացման արդի փուլի էությանը։ Եղբայրական հանրապետություններից յուրաքանչյուրի ինտենսիվ տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնում է նրանց համակողմանի մերձեցման պրոցեսը։ Հայ ժողովուրդը խորապես գիտակցում է, որ առանց եղբայր ժողովուրդների, ամենից առաջ՝ ռուս ժողովրդի մեծ ու բազմակողմանի օգնության երբեք չէր կարողանա իր հողում այդքան արագ և այդպիսի հաջողությամբ իրականացնել սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումներ, հասնել տնտեսական ու կուլտուրական շինարարության բարձունքների։ Սովետական Հայաստանի պատմական փորձը,— նշել է Լ. Ի. Բրեժնևը,— կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ։

Կոմունիստական կուսակցությունը աշխատավորներին դաստիարակել ու դաստիարակում է սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացումի ոգով։ Հիրավի, սովետական մարդը բարեխիղճ աշխատավոր է, բարձր քաղաքական կուլտուրայի տեր մարդ, հայրենասեր և ինտերնացիոնալիստ։ Նա դաստիարակված է կուսակցության, երկրի հերոսական պատմության, մեր ողջ հասարակարգի կողմից, ապրում է նոր աշխարհ կերտողի լիարյուն կյանքով։

---

# ՎԵՐԱԾՆՆԴԻ ՈՒՂԻՈՎ

**ՋԱԼԻԼԵ ՋԱԼԻԼ**
Պատմական գիտությունների թեկնածու

**Պատմությունը չգիտե այնպիսի պետություն, որն ամենակարճ ժամկետներում այնքան շատ բան արած լինի ազգերի և ազգությունների համակողմանի զարգացման համար, որպիսին է ՍՍՀՄ-ը՝ մեր բոլոր ժողովուրդների սոցիալիստական հայրենիքը:**

*ՍՍՀՄ կազմավորման 60-րդ տարեդարձի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից*

*Խոր ու կենսունակ է եղել հայ և քուրդ ժողովուրդների դարավոր բարեկամությունը: Այն հյուսվել է երկու ժողովուրդների տնտեսական ու հոգևոր կյանքի փոխառնչությունների բազում թելերով: Շատ փորձություններով է անցել նրանց բարեկամությունը, սակայն միշտ էլ այն կարողացել է դիմակայել արհավիրքներին, թրծվել ու ավելի ամրակուռ է դարձել:*

*XIX դարի քաղաքական թոհուբոհի մեջ, երբ հայ ժողովրդի տնտեսական, սոցիալական ու մշակութային ինքնությունն անցնում էր մաքառման քարքարոտ ճանապարհներով, հայ մտավորականության առաջադեմ ներկայացուցիչները, անսասան պահելով հավատը լուսավոր ապագայի նկատմամբ, հայ հասարակական մտքի առաջ բարձրացնում էին քուրդ ժողովրդի մշակութային, սոցիալ-տնտեսական կյանքի զարգացման հրատապ խնդիրների լուծման ծրագրեր, իրենց գործարար ծառայությունը մատուցում դրանց իրականացմանը: Հայ մեծ լուսավորիչ ու դեմոկրատ Խաչատուր Աբովյանը քրդերին նվիրված ծավալուն ուսումնասիրությամբ կովկասյան մամուլում դրվատում էր նրանց նահապետական ասպետական ոգին, բարքերի ու սովորույթների առաքինությունը, հոգևոր մշակույթի բարձրարվեստ ստեղծագործությունները: Արևմտահայ հասարակական գործիչներ Հ. Սրվանձյանը, Մ. Մոմճյանը, Մ. Տիգրանյանը գործնական քայլեր էին մշակում քուրդ ժողովրդի լուսավորության, կրթական գործը առաջ մղելու նպատակով: 1866 թ. Կ. Պոլսում Մ. Տիգրանյանի հայատառ քրդերենով հրատարակած «Ծրայե Ռոնայի» («Լապտեր լուսատու») այբբենարանը խոշոր իրադարձություն էր երկու ժողովուրդների մշակութային կյանքում: Նշանակալից էին և հայ ճանաչված բանասեր, բանահավաք Գ. Սրվանձտյանցի, հասարակական գործիչ Խրիմյան Հայրիկի համատեղ ջանքերը երկու ժողովուրդների բազմակողմանի փոխառնչությունների ամրապնդման ու զարգացման ասպարեզում: Հայ երգարվեստի նահապետ Կոմիտասը, պրոպագանդելով քրդական երգ-երաժշտության ազգային ինքնատիպությունը, սիրով ձեռնամուխ եղավ բազմաթիվ քրդական ժողովրդական էպիկական, հերոսական ու սիրային երգերի նոտագրման երախտաշատ գործին:*

*Հայ և քուրդ հասարակական, մշակութային առաջադեմ գործիչները երկու ժողովուրդների բարեկամության ամրապնդման նոր ու լայն ծրագրերով էին համակված, երբ սկսվեց առաջին համաշխարհային պատերազմի սպանդը:*

*Հոկտեմբերյան հեղափոխությունը Ռուսաստանում նոր դարագլուխ բացեց մահվան արհավիրքից փրկված հայության համար: Պետականության իրավունք ձեռք բերեց հայ ժողովուրդը՝ դառնալով սովետական բազմազգ ընտանիքի իրավահավասար անդամը. նոր՝ սոցիալիստական կեցության պայմաններում*



*նա հնարավորություն ստացավ խաղաղ, ստեղծագործ աշխատանքով կերտելու իր լուսավոր ապագան՝ կոմունիստական հասարակարգը:*

*Սովետական կարգերի հաստատումը Հայաստանում շրջադարձային բախտորոշ նշանակություն ունեցավ ո՛չ միայն հայ ժողովրդի պատմական ճակատագրի, այլև թուրքական յաթաղանից ու իմպերիալիստական գիշատիչների հալածանքներից փրկված, հայ ժողովրդի հողում հանգրվանած քուրդ ժողովրդի մի հատվածի համար: Նոր հասարակարգի հաստատումը քուրդ ժողովրդի ազատագրված հատվածի կյանքում նշանավորվեց որպես տնտեսական, սոցիալական ու քաղաքական հարաբերությունների հեղափոխական վերափոխության դարաշրջան:*

*Պատմության զարգացման ընթացքը քուրդ ժողովրդի համար ստեղծեց երկու ճակատագիր՝ իր ազգային ու սոցիալական իրավունքների համար դեռ մինչև օրս պայքարող քուրդ ազգաբնակչության և սովետական երկրում ազգային ու սոցիալական վերածնունդ ապրող քուրդ ժողովրդի մի հատվածի համար:*

*Սովետական երկրում ապրող քուրդ ժողովրդի ազատագրված հատվածի իրավահավասարության հիմքը դրվեց 1917 թ. նոյեմբերի 15-ի ժողկոմխորհի և ազգությունների ժողովրդական կոմիսարիատի հռչակած՝ «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայով», ուր շարադրված էին աշխարհում առաջին հեղափոխական երկրի ազգային քաղաքականության հիմնական սկզբունքները:*

*Ազգերի հավասարության իրավունքը հաստատվեց և Սովետական Հայաստանի առաջին օրենսդրությամբ: Հայաստանի կառավարության գործունեության առաջին քայլերը կոչված էին վերացնելու երկրի տնտեսական ավերածությունը, արմատավորելու սոցիալական ու հասարակական նոր հարաբերություններ: Միջոցներ ձեռնարկվեցին հնից ժառանգած հետամնացությունն ու ազգային ճնշվածությունը վերացնելու համար:*

*Հայաստանում բնակվող քրդերի մեծ մասը Թուրքիայից եկած գաղթականներ էին, որոնք զուրկ էին օթևանից: Հանրապետության կառավարության որոշմամբ փախստական ընտանիքներին հատկացվեցին հողատարածություններ, հիմնադրվեցին նոր գյուղեր ու բնակավայրեր: Միայն 1923—1925 թթ. պետության հաշվին կառուցվեցին տասնյակ գյուղեր: Չքավոր ընտանիքների տնտեսությունը վերականգնելու նպատակով կառավարությունը հատկացրեց մեծ գումարով երկարատև վարկ: Հողաշինարարական աշխատանքներին զուգահեռ նպաստավոր պայմաններ ընձեռվեցին քրդերին՝ անասնապահությամբ զբաղվելու համար:*

*Առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց քուրդ ազգաբնակչության շրջանում կուլտուր-լուսավորական աշխատանքների ծավալմանը, բնակչության քաղաքական ու գաղափարական մակարդակի բարձրացմանը: Գյուղերում բացվում էին լիկկայաններ, խրճիթ-ընթերցարաններ, դպրոցներ: Արդեն 1921 թ. հունվարին հանրապետության ուսուցիչների առաջին համագումարում, լուսավորության կարևորագույն հարցերի հետ մեկտեղ Ա. Մռավյանն առաջադրում էր քուրդ ազգային մանկավարժական կադրեր ստեղծելու, քուրդ մանուկներին մայրենի լեզվով ուսուցանելու խնդիրները:*

*1922—1923 ուստարում Հայաստանում գործում էին քրդական 5 դպրոցներ՝ 322 աշակերտներով, հաջորդ ուստարում դրանց թիվը հասավ 8-ի: Սակայն ուսուցման, լուսավորության գործը սկզբնական շրջանում հանդիպում էր լուրջ դժվարությունների: Չկային ազգային մանկավարժական կադրեր, դպրոցական գրականություն: Հրատապ էր մայրենի լեզվով նոր գիր ու գրականության ստեղծման խնդիրը, որի լուծումը հնարավոր կլիներ միայն ու միայն մայրենի լեզվով այբուբենի գոյության պայմաններում: Արաբական տառադարձության հիման վրա քրդերեն այբուբեն ստեղծելու որոշակի փորձեր կատարել էին առանձին քուրդ մտավորականներ, դեռևս մինչև հեղափոխությունը, հրատարակել թերթեր, ամսագրեր: Հայերեն տառադարձության հիման վրա քրդերեն այբուբեն ստեղծելու փորձեր կատարել էին և հայ առաջադեմ մտավորականները: Հենվելով այդ փորձի վրա՝ 1921 թ. Հայաստանի լուսժողկոմատը հրա-*

տարակեց հայ երախտավոր Հակոբ Ղազարյանի (Լազո) կազմած «Շամս»
(արև) հայատառ քրդերեն այբբենարանը։ «Շամս»-ի հրատարակումը նշանա-
կալից մշակութային երևույթ էր Հայաստանի քուրդ ազգաբնակչության կյան-
քում. մեծ եղավ այդ դասագրքի դերը անգրագիտության վերացման աշխա-
տանքների առաջին փուլում։ Այս դասագրքով գրաճանաչ դարձան տասնյակ ու
տասնյակ քուրդ աշխատավորներ։

Հայաստանում պարբերաբար հրավիրվում էին քուրդ աշխատավորության
ակտիվի հավաքներ ու կոնֆերանսներ։ Դրանք կազմակերպվում էին հանրա-
պետության այն շրջաններում, ուր քուրդ ազգաբնակչությունը մեծ թիվ էր
կազմում։ Շրջանային անկուսակցական հավաքներում քննարկվում էին հա-
մապատասխան միջոցառումներ, մշակվում հանրապետության տարածքում
բնակվող քուրդ ազգաբնակչության սոցիալ-տնտեսական, հասարակական ու
լուսավորության խնդիրները։ Հետագայում քրդական այդ անկուսակցական
համագումարներին մասնակցում էին նաև Վրաստանի և Ադրբեջանի քուրդ աշ-
խատավորության պատգամավորները։

Քննարկվող հարցերը հեղափոխության առաջին տարիներին ունեին երկու
հիմնական ուղղություն՝ խնդիրներ, որոնք կապված էին գյուղի սոցիալական
ու տնտեսական կյանքի վերակառուցման հետ և պայքար հնից ժառանգած
սովորույթների ու հետամնացության դեմ, լուսավորության հարցեր։

Գյուղի վերակառուցման աշխատանքներին տեղերում ակտիվ մասնակցում
էին չքավորական խավերից ելած քուրդ ակտիվիստները, կուսակցական աշ-
խատողները։ Կրթության բնագավառում նշանակալից էր հայ մտավորականու-
թյան ավանդը։ Նորաբաց քրդական դպրոցներում քրդերենի առաջին ուսու-
ցիչները քրդերենին քաջագիտակ հայ մանկավարժներն էին։ Հայ մտավորա-
կանության այս ներկայացուցիչների գործունեությունն ինտերնացիոնալ բա-
րեկամության դրսևորման փայլուն օրինակ էր։

1927 թ. մայիսին Երևանում գումարվեց քրդերի հանրապետական ակտի-
վի I կոնֆերանսը, իսկ նույն թվականի դեկտեմբերին՝ II կոնֆերանսը, որին
մասնակցում էին տարբեր շրջաններից հրավիրված 40 ակտիվիստներ։

Կոնֆերանսում ճանաչված հասարակական գործիչ Ա. Շամիլովը ժողովրդի
ձեռք բերած նվաճումների մասին հպարտությամբ զեկուցում էր, որ ստեղծ-
վել են քրդական երկու կուսբջիջ՝ 17 անդամներով, 9 կոմերիտական բջիջ՝ 203
անդամներով, 9 պիոներական կոլեկտիվներ՝ 408 պիոներներով, որ քրդական
գյուղերում բացված են առաջին աստիճանի 13 դպրոց, 7 լիկկայան, 3 խրճիթ-
ընթերցարան։ Կուսակցության XV համագումարին ուղղված կոնֆերանսի ող-
ջույնի խոսքում երախտագիտությամբ ասված էր. «Խորհրդային Հայաստանի
քրդերը, որոնք ցարիզմի կողմից ճնշված՝ Արևելքի ժողովուրդների ամենահե-
տամնաց խավերից բարձրացել հասել են ներկա վիճակին, ջերմ ողջույն են
հղում համամիութենական հեղափոխական կոմկուսին՝ հանձին նրա XV հա-
մագումարի։ Աշխատավոր քրդերը չեն կարող ջերմորեն շնորհակալություն
չհայտնել համամիութենական կոմկուսին նրա միակ ճիշտ ազգային քաղաքա-
կանության համար։ Քաղաքականություն, որն Արևելքի նախադռանը 20.000
քրդերի ազատել է դարավոր ճնշումից, որի շնորհիվ ներկայումս նրանք բարձ-
րանում են տնտեսապես, քաղաքականապես և կուլտուրապես»։

1928 թ. Հայաստանի Կենտգործկոմը կազմում է քրդական այբուբենի
մշակման հատուկ կոմիտե։ Լատինական տառերի հիման վրա քրդական այբու-
բեն կազմելու գործը հանձնարարվում է քրդերենի լավագիտակ, ազգությամբ
ասորի Իսահակ Մարագուլովին. ամենայն բարեխղճությամբ վերջինս ձեռնա-
մուխ է լինում այդ դժվարին, շնորհակալ գործին։ 1929 թ. սկզբներին Բաք-
վում Թուրքական նոր այբուբենի միութենական կենտրոնական կոմիտեին կից
գործող գիտական խորհուրդը աննշան փոփոխությամբ հաստատում է Ի. Մա-
րագուլովի կազմած լատինատառ քրդական այբուբենը։ Եվ ահա 1929 թ. մար-
տի 25-ին Երևանում հրավիրվում է քրդական նոր այբուբենի խնդիրներին
նվիրված խորհրդակցություն, որին մասնակցում էին Հայաստանի քուրդ աշ-
խատավորության ներկայացուցիչներ։ Հանրապետության լուսավորության ժո-
ղովրդական կոմիսարիատի կոլեգիան ձեռնամուխ է լինում նոր այբուբենի



կիրարկմանը։ Նույն տարում հրատարակվում են առաջին ինքնուսույց այբբե-
նարանները։ Պրոֆ. Հ. Օրբելուն հանձնարարվում է կազմել քրդերեն քերակա-
նության դասագիրք։ Քրդական գյուղերում լայն աշխատանք է ծավալվում լա-
տինատառ այբուբենի արմատավորման, անգրագիտության վերացման նպա-
տակով։

Քրդական մշակույթը թևակոխում է զարգացման նոր փուլ։ Մի քանի տա-
րիների ընթացքում հրատարակվում են տասնյակ դպրոցական դասագրքեր,
գեղարվեստական թարգմանական ու քաղաքական գրականություն։ Ընդար-
ձակվում է դպրոցական ցանցը։ 1930 թ. գործում էր արդեն 27 քրդական
դպրոց՝ 1.451 սովորողներով։ Շնորհիվ քրդական գյուղերում բացված լիկկա-
յանների 1930—1931 թթ. գրագետ դարձան 867, իսկ 1931—1932 թթ. մոտ
1.483 հոգի։ 1930—1931 թթ. տարրական դպրոցներն ընդգրկվեցին քուրդ մա-
նուկների 82 տոկոսը, իսկ 1934—1935 ուստարում դպրոցական տարիքի գրե-
թե բոլոր երեխաները։

Այբուբենի ստեղծման, գյուղերում գրագիտության տարածման հաջող ըն-
թացքը պայմաններ ստեղծեց քրդերեն պարբերականի հրատարակման համար.
այն առավել նպատակասլաց կդարձներ նորաստեղծ մտավորականության գոր-
ծունեությունը սոցիալիստական կյանքի, շինարարության, կոմունիստական
գաղափարների տարածման բնագավառներում։

1930 թ. սկզբներին արդեն ստեղծվել էր քրդերենի տպագրական բազա։
Պատվիրվել էին տպագրական մեքենաներ, ձուլված էին լատինական տառեր,
հատկացվել էին ֆինանսական զգալի միջոցներ։ Քուրդ ժողովրդի կյանքում
պատմական իրադարձություն էր սովետական քրդերի առաջին լրագրի հրա-
տարակությունը 1931 թ. մարտի 25-ին։ Սոցիալիստական հասարակարգ կա-
ռուցող ժողովրդին բնորոշ վերնագիր էր ընտրված լրագրի համար՝ «Ռյա Թա-
զա» («Նոր ուղի»)։ Հայտնի է, որ դեռևս անցյալ դարի վերջերին արտասահ-
մանում քուրդ հայրենասերները փորձել են հրատարակել քրդերեն լրագրեր ու
ամսագրեր, սակայն դրանք ունեցել են շատ կարճ կյանք, իսկ նախաձեռնող-
ները հալածվել են, բռնության ենթարկվել։ Մինչդեռ Սովետական Հայաստա-
նում «Ռյա Թազա»-ն սովետական իշխանության, եղբայրական հայ ժողովր-
դի անշահախնդիր ու անկեղծ հոգատարության ծնունդ էր։ Ահա թե ինչու,
լրագրի առաջին համարների լույսընծայման ժամանակ, երբ դեռևս մեծ էր
ազգային կադրերի պակասը, «Ռյա Թազա»-ի խմբագրության աշխատանքնե-
րին պատրաստակամությամբ աջակցեցին բազմաթիվ քրդախոս հայ մտավո-
րականներ։ Այսօր, երբ Հայաստանի քուրդ մտավորականությունը մեծ թիվ է
կազմում, երախտագիտությամբ են հիշվում «Ռյա Թազա»-ին աշխատակցող
հայ գրչակից բարեկամների անունները։ «Ռյա Թազա»-ի առաջին խմբագիրն
էր հայ գրող ու գրականագետ Հարություն Մկրտչյանը, խմբագրական կոլե-
գիայի անդամ էին Հրաչյա Քոչարը, Ռուբեն Դրամբյանը և ուրիշներ։ Թերթի
ծնունդը ջերմորեն ողջունեց Հայաստանի Կենտգործկոմի նախագահ Ս. Կասյա-
նը։ «Ես շատ ուրախ եմ քրդական այբուբենի տարեդարձի առթիվ,— ասված
էր ողջույնի խոսքում։— Քուրդ ժողովուրդը երկար տարիներ հեծել է ցարական
Ռուսաստանի, սուլթանական Թուրքիայի և շահական Իրանի լծի տակ։ Մյուս
կողմից էլ այս ժողովուրդը բռնի ուժով հարստահարվում էր բեգերի ու շեյխերի
կողմից։

Նոր այբուբենի օգնությամբ քուրդ աշխատավորները կկարողանան արագ
առաջ գնալ ու մյուս ազգերի հետ կկագնեն սոցիալիզմի ճանապարհին»։

Մեծ եղավ «Ռյա Թազա»-ի դերը քուրդ աշխատավորության կյանքում։
Գյուղերում սիստեմատիկաբար կազմակերպվում էին թերթի համարների կո-
լեկտիվ ընթերցումներ, քննարկվում ու հավանություն էին գտնում նոր կյանքի
կառուցման, հնի մնացուկների վերացման հարցերին վերաբերող հոդվածները։
Կարճ ժամանակաընթացքում լրագրի շուրջը համախմբվեց քուրդ գյուղական
լրագրողների մեծ խումբ։ «Ռյա Թազա»-ն մեծապես նպաստեց նոր կադրերի
գաղափարական դաստիարակության գործին։ Լրագրի ակտիվ թղթակիցներից
էին Արաբ Շամիլովը, Ջարդոյե Գենջոն, Հաջիե Ջնդին, Ամինե Ավդալը, Ջասըմե
Ջալիլը, Աթարե Շարոն և ուրիշներ։

ընդունել հունգարների պահանջները, բայց միաժամանակ հարձակում կազմակերպեց երիտասարդ պետության դեմ: Խորվաթական պան Ելաշիչի զորքերի հարձակման ընթացքում (1848 թ. սեպտեմբեր) հեղափոխությունը վերաճեց ազգային-ազատագրական պայքարի: Բացահայտ դարձավ թշնամությունը հունգարական կառավարության և կայսերական արքունիքի միջև: Ի պատասխան Վիեննայում տեղի ունեցող հեղափոխության, հունգարական բանակը շարժվեց դեպի Ավստրիա՝ օգնելու մայրաքաղաքում ծավալված հեղափոխական շարժմանը: Բայց վիեննական հեղափոխությունը պարտվեց, իսկ հունգարական զորքերի առաջխաղացումը կասեցվեց Շվեհատի տակ: Ազգային-ազատագրական պայքարի ընթացքում կայսերական զորքերը չկարողացան վճռական հաղթանակ տանել: 1849 թվականի ապրիլին, երբ Դեբրեցենում Պետական ժողովը հանդիսավորությամբ հայտարարեց Հաբսբուրգներին հունգարական գահից տապալելու մասին, Ֆրանց Իոսիֆ I-ը օգնության կանչեց ռուսական դաշնակից զորքերին: 1849 թվականի օգոստոսին ռուս-ավստրիական միացյալ բանակը հարկադրեց հունգարներին անձնատուր լինել: Նիկոլայ I-ը, որին զուր չէին կոչում «Եվրոպայի ժանդարմ», պատրաստակամությամբ օգնում էր ամեն մի հեղափոխական շարժում ճնշելուն, չնայած ռուսական բանակի շատ սպաների համակրանքը ազատատենչ հունգարների կողմն էր: Ինտերվենցիայի դեմ իրենց ձայնը բարձրացրին Գերցենը և Չերնիշևսկին: Հեղափոխական կառավարության ղեկավար Կոշուտը և նրա շատ զինակիցներ ստիպված թողեցին հայրենիքը: Մահ կամ բանտարկություն էր սպառնում նրանց, ում հաղթողները կարողանում էին բռնել:

1848—1849 թվականների հեղափոխության ընթացքում նշանակալի դեր են խաղացել հայերը, որոնք զենքը ձեռքներին կռվել են հանուն Հունգարիայի ազատագրման, օգնություն ցույց տալով ավստրիական իշխանության դեմ ապստամբած հայրենասերներին: Հայ կամավորների մեջ կային ո՛չ միայն շարքային մարտիկներ, այլև հունգարական բանակի ականավոր զորահրամանատարներ, ինչպես, օրինակ, գեներալ Ցեց Յանոշը: Ծնվել է նա 1822 թըվականին, Տրանսիլվանիայում: Ավստրո-հունգարական բանակի մայոր էր նա: 1848—49 թվականների հեղափոխության ժամանակ տաղանդավոր հրամանատարը ապստամբած հայրենասերների կողմն էր: Գերազանց տիրապետելով ստրատեգիային ու տակտիկային՝ նա մի շարք հաղթանակներ էր տարել Ժուբոյի, Նադսեբենի տակ և այլուր: Այնուհետև նա ստանում է գեներալի կոչում և, որպես բանակի շտաբի պետ, մասնակցում հունգարական հեղափոխական պայքարին: Հեղափոխության պարտությունից հետո գեներալ Ցեցը վտարանդվել է սկզբում Իտալիա, ուր ակտիվ մասնակցել է հունգարական լեգիոնի կազմակերպմանը: Այն պետք է մասնակցեր հանուն միասնական Իտալիայի ծավալված իտալական ազգային հեղափոխությանը, որը ղեկավարում էր Գարիբալդին: 1861 թ. մեկնելով Արգենտինա՝ Ցեցը դառնում է Բուենոս Այրեսի զինվորական դպրոցի և ակադեմիայի դիրեկտորը, հիմնում այնտեղ զինվորական աշխարհագրական ինստիտուտ: Նրա եռանդուն, բովանդակալի կյանքի թելը կտրվում է 1904 թվականին, Բուենոս Այրեսում:

Զինվորական բարձր պաշտոններ են գրավել նաև Էրնյո Կիշը, Վիլմոշ Լազարը: Գեներալ Էրնյո Կիշը ծնվել է 1800 թվականին, Թեմեշվարեում. դեռևս երիտասարդ փոխգնդապետ՝ նա աչքի է ընկել սերբերի դեմ մղված մարտերում, որից հետո նշանակվել է հունգարական բանակի գեներալ: Որոշ ժամանակ եղել է պաշտպանության մինիստրության ղեկավարության կազմում: Հեղափոխության պարտությունից հետո Կիշը գերի է ընկնում և 1848 թվականի հոկտեմբերի 6-ին զոհվում: Քաջարի, հիանալի զինվոր էր նա, կորովի ու բարեկիրթ: Հեղափոխության սկզբին տոհմական ողջ հարստությունը նա տրամադրել է բանակի ծախսերին:

Վիլմոշ Լազարը ծնվել է 1815 թվականին, Հատբեչկերեկում. ծառայել է ավստրոհունգարական բանակում, այնուհետև թողել է զինվորական գործը և հաստատվել սեփական կալվածքում: Հեղափոխության սկզբից լինելով զինված ուժերում, ճակատամարտերում աչքի է ընկել քաջությամբ, ռազմիկին վայել անկոտրում բնավորությամբ: Պարտությունից հետո գնդապետ Լազարը ևս զոհվեց Արադում, 1848 թվականի հոկտեմբերի 6-ին: Հունգար ժողովրդի հեղափոխական կռիվներում փառքով պսակվեցին նաև նահատակված հայորդիները:

Դիոր-Շոպրոնի մարզի կյանքում ևս հայերը կարևոր դեր են խաղացել: XIX դարի ընկըզբում Դիորում լայնորեն տարածվում են ռեֆորմիստական գաղափարները: Այդ ժամանակ Դիոր քաղաքը երկրում հայտնի էր որպես զարգացած արհեստավորական և առևտրական կենտրոն: Ահա թե ինչպես է բնութագրվել Դիորը 1845 թվականին. «Այն թագն ու հոգին էր գավառական քաղաքների: Կուլտուրայի բարերար ազդեցությունը, ծավալուն առևտուրը, արհեստն ու աշխատասիրությունը Դիորի բնակիչների համար ապահովում են նյութական գերազանց բարեկեցություն...»: Դրա հաստատումն է այն, որ 1846 թվականին բացվում է արհեստավորական ցուցահանդես, որտեղ ներկայացվում են քաղաքային զարգացած արհեստները: Ցուցահանդեսը, ուր այցելել է նաև Կոշուտ Լայոշը, կազմակերպել էր Շանդոր Լուկաչը: Հունն վերելք էր ապրում քաղաքի հոգևոր կյանքը, որն այնպես ծաղկում էր Դիորի ակադեմիայում: Այստեղ հրատարակվում էր «Հայրենիք» («Հազանկ») լրագիրը՝ այդ ժամանակաշրջանի մամուլի ամենաառաջադեմ օրգանը: 1848 թվականին, երբ բռնկվեց հեղափոխությունը, Կոշուտի կողմնակիցները՝ «դիորյան տասնյակները», Շանդոր Լուկաչի գլխավորությամբ կարողացան հասնել հեղափոխական գաղափարների հաղթանակին. այդ բուռն ոգևորությամբ համակեց Դիորի բնակչությանը:

Շանդոր Լուկաչը ծնվել է հայկական ընտանիքում, 1823 թվականին, Մաջար-Հոնորդում: Հեղափոխության ժամանակ՝ 1848 թվականին, Դիոր քաղաքի կառավարության լիազորն էր նա: 1840 թվականին, երբ նա ընդունվեց Դիորի իրավաբանական ակադեմիան, ոչ մեկի մտքով չէր անցնում, որ հայկական ընտանիքից սերած այդ երիտասարդը մի քանի տարի անց նշանակալի դեր է խաղալու հեղափոխության ժամանակ: 1842 թվականին նա գերազանց ավարտում է ակադեմիան, վերադառնում հարազատ Բիհատ մարզը, աշխատում այնտեղ որպես փոխնոտար, ջանում ներազդել մարզի հասարակական կյանքի վրա: Լուկաչն իր ուժերը փորձել է նաև գրականության ասպարեզում: 1846 թվականին Դեբրեցենում լույս է տեսել նրա ժողովածուն՝ **Գրպանի գըրքույկ** վերնագրով: 1845 թվականին վերադառնում է Դիոր և աշխատում այստեղի լիբերալ շարժման կազմակերպիչ Օտտո Զիչիի մոտ, որպես անձնական քարտուղար: Դիորում էլ ի հայտ են գալիս նրա ունակությունները տնտեսական և քաղաքական-հասարակական կյանքում:

Հարկ է նշել և այն, որ Դիոր քաղաքի իրավաբանական ակադեմիայի մի քանի հարյուր և քաղաքացիական պահակախմբի հինգհարյուր երիտասարդներ հող ստեղծեցին և նպաստեցին հասարակության ազգային զարթոնքին և առաջադիմական գաղափարների տարածմանը: Լիբերալ շարժման ղեկավարները՝ «դիորյան տասնյակները», կարողացան ներազդել նաև հարևան մարզերի քաղաքական կյանքի վրա, դրանով իսկ թուլացնելով պահպանողականների իշխանությունը: Շուտով «դիորյան տասնյակները» հայտնի դարձան ողջ Հունգարիայում: Նրանք ակտիվ հանդես էին գալիս Դիորի «Հազանկ» լրագրի էջերում: Նրանց աջակցելու համար այդ խմբագրությանը բանաստեղծություններ էր ուղարկում Շանդոր Պետեֆին, գրող ընկերներին ևս մղելով այդ մարդասիրական քայլին: Դեռևս մինչև 1848 թվականը Շանդոր Լուկաչը պաշտպանում ու զարգացնում էր պրոգրեսիվ գաղափարներ և մեծ դեր խաղաց այդ գաղափարների տարածման գործում: Նրա եռանդուն, կորովի բնավորությունը և կազմակերպչական բացառիկ ունակությունները լիովին դրսևորվեցին հեղափոխության ժամանակ: Շանդոր Լուկաչը 1848 թվականի մարտի 4-ի ցույցի ակտիվ կազմակերպիչներից մեկն էր: Մարտի 15-ին թատրոնի առաջ տեղի ունեցած ցույցին մասնակցեցին 8—10 հազար մարդ: Այս և բազմաթիվ այլ վկայություններ ապացուցում են, որ նրա անունը միահյուսվել է Դիոր քաղաքի՝ 1848 թվականի պատմությանն այնպես, ինչպես Շանդոր Պետեֆիի անունը Պեշտի աշխատավորության հեղափոխական ելույթներին: Այդ զանգվածային ընդվզումները, որոնց մասնակցում էին նաև հայ աշխատավոր խավերի ներկայացուցիչները, դեռևս այն ժամանակ սարսափեցնում էին պահպանողականներին:

Հեղափոխական իրադարձությունները շուտով դուրս եկան Դիոր քաղաքի սահմաններից և կայծակնային արագությամբ տարածվեցին: Արդեն 1848 թվականի մարտի 16-ին Շանդոր Լուկաչն իր համախոհների հետ շարժվում էր դեպի Պոժոն քաղաքը՝ ժողովրդական ժողովի նիստում մանիֆեստը հաստատելու համար: Մանիֆեստը կազմվել էր Շանդոր Լուկաչի գլխավորությամբ, որը մեծ հեղինակություն էր վայելում և կարողանում էր ընթացք տալ ժողովներին: Ընտրվել էր 32 հոգուց բաղկացած կոմիտե: Պոժոնի բնակչությունը պաշտպանեց Լուկաչին, և ապրիլի ըսկըզբին կազմակերպվեց ցույց՝ դիորյան ազգային գվարդիայի և տեղի իրավաբանական ակադեմիայի սովորողների մասնակցությամբ: Պատվիրակությունը մանիֆեստը տարավ Վիեննա. ներկայացված պահանջները չբավարարելու դեպքում, հայտնում էր պատվիրակությունը, ժողովուրդը պատրաստ է կյանքի գնով պաշտպանելու հայրենիքը:

Շանդորը Լուկաչը 25 տարեկան էր, երբ նրան ընտրեցին պետական ժողովի դեպուտատ: 1848 թվականի սեպտեմբերի 20-ին Կոշուտը Լուկաչին նշանակում է Դիոր քաղաքի և մարզի պետական լիազոր: Այդ պահից նա մշտապես անդուլ պայքարել է քաղա-

քի մագիստրոսի դեմ, որը պաշտպանում էր միայն հարուստ բուրժուազիայի շահերը: 1848 թվականի հոկտեմբերի 19-ին Կոշուտը եկավ Դիոր. հեղափոխականորեն տրամադրված զանգվածները ջերմորեն ընդունեցին նրան: Լուկաչը հիանալի կազմակերպիչ էր. նա հավաքագրեց զինվորներ, կահավորեց հոսպիտալը, Դիոր քաղաքը նախապատրաստեց պաշտպանության, այն շրջապատելով խրամատներով:

Դիոր քաղաքը կարելի է համարել 1848 թվականի հեղափոխության հենակետը: Չնայած այդ ամենին, 1848 թվականի դեկտեմբերին Դիորը հարկադրված եղավ հանձնվել: Պատմությունից հայտնի է, որ Հունգարիայի 1848 թվականի հեղափոխությունը չկարողացավ դիմադրել Հաբսբուրգների և նրա դաշնակիցների ուժերին: Հեղափոխությունը պարտվեց: Հեղափոխականները դաժանորեն պատժվեցին:

Հեղափոխության պարտությունից հետո Ծանդոր Լուկաչին հաջողվում է անցնել արտասահման: Նա մեռնում է Ֆրանսիայում: Կարճատև եղավ նրա կյանքը, բայց նա արժանի լումա ներդրեց Հունգարիայի 1848—1849 թթ. հեղափոխության պատմության մեջ, անդուլ պայքարեց հայրենիքի ազատության ու անկախության համար:

Հունգար ժողովուրդն այսօր հպարտանում է Ծանդոր Լուկաչով և նրա նման հերոսներով, որոնցով իրավամբ կարող է հպարտանալ և հայ ժողովուրդը:

Այսօր Սովետական Հայաստանի և Դիոր-Շոպրոնի մարզի եղբայրացած աշխատավորները վառ են պահում իրենց նախնիների բարեկամական ավանդույթները և ավելի սերտ ու համակողմանի են գործակցում հանուն սոցիալիստական իդեալների իրականացման:

*Հունգարիա, Դիոր-Շոպրոնի մարզ*

---

# ՓԱՍՏԱԹՂԹԵՐ ՍՍՀՄ ԵՎ ԱՆԴՐՖԵԴԵՐԱՑԻԱՅԻ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Սովետական հանրապետությունների միջպետական հարաբերությունների կարգավորմանը և նրանց տնտեսական ու քաղաքական ջանքերի միավորմանը առաջինը ձեռնամուխ եղան Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունները:

Այդ միավորիչ շարժման նախաձեռնողն ու ոգեշնչողը Վ. Ի. Լենինն էր: Դեռ 1921 թ. ապրիլին Կովկասի կոմունիստ ընկերներին ուղղած նամակում Վ. Ի. Լենինը շեշտում էր Կովկասի սովետական հանրապետությունների սերտ դաշինքի անհրաժեշտությունը, որը կստեղծեր ազգային խաղաղության չտեսնված օրինակ (տե՛ս ԵԼԺ, հ. 43, էջ 237):

Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունների ջանքերի շնորհիվ 1921 թ. միավորվեցին Անդրկովկասյան հանրապետությունների արտաքին առևտուրը և երկաթուղային տրանսպորտը: Ստեղծվեցին արհմիութենական և երիտասարդական կազմակերպությունների միացյալ երկրային կոմիտեներ: Հանրապետությունները սկսեցին վարել դիվանագիտական միասնական քաղաքականություն:

1921 թ. դեկտեմբերի սկզբին տեղի ունեցավ Անդրկովկասի կուսակցական երկրային երկրորդ խորհրդակցությունը, որը որոշեց ձեռնամուխ լինել Անդրֆեդերացիայի ստեղծման պրակտիկ աշխատանքին: Դրանում կարևոր դեր խաղացին 1922 թ. սկզբներին կայացած Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի կոմունիստական կուսակցությունների և սովետների համագումարները, որոնք միահամուռ արտահայտվեցին Անդրֆեդերացիայի կազմավորման օգտին:

1922 թ. մարտի 11—12-ը տեղի ունեցավ Անդրկովկասի հանրապետությունների ներկայացուցիչների լիազոր կոնֆերանսը, որն ընտրեց Դաշնակցային խորհուրդ, հաստատեց Անդրֆեդերացիայի ժողովրդական տնտեսության գերա-
Դաշնակցային պայմանագիրը և
գույն խորհրդի կանոնադրությունը:

Անդրֆեդերացիայի վերջնական կազմավորման գործում խոշոր դեր խաղաց 1922 թ. դեկտեմբերին կայացած Սովետների Անդրկովկասյան առաջին համագումարը, որն ընդունեց Սահմա-
Անդրկովկասյան Սոցիալիստական Ֆեդերատիվ Սովետական Հանրապետության
նադրությունը:

1922 թ. համարյա միաժամանակ բոլոր սովետական հանրապետությունները առաջա-
դրեցին միասնական միութենական պետության կազմավորման հարցը: Նույն թվականի
հոկտեմբեր—դեկտեմբերին Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ադրբեջանի, Հայաստանի և Վրաս-
տանի կոմունիստական կուսակցությունների կենտկոմների պլենումները արտահայտվեցին
ՍՍՀ Միության մեջ սովետական հանրապետությունների միավորման օգտին: Միավորման
շարժումը համաժողովրդական բնույթ ընդունեց: 1922 թ. դեկտեմբերին կայացած բոլոր
հանրապետությունների սովետների համագումարները միահամուռ արտահայտվեցին ՍՍՀՄ
ստեղծելու օգտին:

1922 թ. դեկտեմբերի 30-ին Մոսկվայում կայացավ Սովետական Սոցիալիստական Հան-
րապետությունների Միության սովետների առաջին համագումարը: Համագումարն ընդունեց
Դեկլարացիա ՍՍՀՄ կազմավորման մասին և Դաշնագիր, ընտրեց գերագույն օրենսդիր
մարմին՝ ՍՍՀՄ Կենտգործկոմ:

ՍՍՀՄ-ի կազմավորումը լենինիզմի գաղափարների, կոմունիստական կուսակցության
լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն էր:

Հրատարակվող փաստաթղթերը պատմում են աշխատավոր մասսաներին Անդրֆեդե-
րացիայի և ՍՍՀՄ-ի կազմավորման համար սկսված համաժողովրդական շարժման ոլորտը
ներգրավելու նպատակով Հայաստանի կոմունիստական կուսակցության գործունեության

կուս[ակցությունը], որը բանվորին ու գյուղացուն տվել է խաղաղություն և շինարար աշխատանք։

Կեցցե կոմ[ունիստական] կուսակցությունը։

Կեցցեն Կարմիր խորհուրդները։

Կեցցե Կովկասյան ֆեդերացիան։

Ֆ. 52, ց. 1, գ. 34, թ. 9—10։

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 9

### Ն[ԵՐՔԻՆ] ԽԱԹՈՒՆԱՐԽԻ[17] ԵՎ ՂԱՐՂԱԲԱԶԱՐԻ[18] ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ԺՈՂՈՎԻ ՈՐՈՇՈՒՄԸ

16 դեկտեմբերի 1921 թ.

Ողջունել Անդրկովկասյան ֆեդերացիան, որը միացնում է մեր երեք հանրապետություններին, որի շնորհիվ կարող ենք կպչել ազատ և շինարար աշխատանքի։ Խոստանում ենք խորհուրդների ընտրության ժամանակ տալ պատգամավորներ մեր ամենալավ ընկերներից։

Կեցցե Անդրկովկասյան ֆեդերացիան։

Կեցցե խորհուրդների ընտրությունը։

Ֆ. 6, ց. 1, գ. 16, թ. 4

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 10

### ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՅԻ ՄԱՍԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ) ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

26—29 հունվարի 1922 թ.

...Ներկա պայմաններում Հայաստանի սովետական իշխանության կազմակերպվածությունն ու ուժը պայմանավորված են Վրաստանի և Ադրբեջանի հետ սերտ կապով։ Այս առումով Անդրկովկասյան Հանրապետությունների Ֆեդերացիան լիովին համապատասխանում է մեր երկրի շահերին։ Ֆեդերացիան կովկասյան հանրապետությունների հզորացումն է քաղաքական ու միջազգային առումով։ Այն տնտեսապես իրար հետ կապում է կովկասյան հանրապետությունները և դրանով իսկ բարձրացնում երկրամասի տնտեսությունը։

Վերջապես, ֆեդերացիան եղբայրաբար կմերձեցնի իրար Անդրկովկասի ժողովուրդների աշխատավորներին և ուժգին կհարվածի ազգայնական այն շմոլքին, որը վարակել է ոչ միայն լայն զանգվածների շարքերը, այլև Անդրկովկասի կոմունիստներին։

Ուստի, ողջունելով ֆեդերացիան, համագումարը հանձնարարում է Հայաստանի պատվիրակությանը կոմկուսակցության համակովկասյան առաջիկա համագումարում համառորեն պնդել մոտակա ժամանակում իրականացնելու ֆեդերացիան։

Ֆ. 1, ց. 1, գ. 233, թ. 42

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 11

### ՂԱՐԱՔԻԼԻՍԱՅԻ[20] ԿՈՒՍ[ԱԿՑԱԿԱՆ], ԱՐՀՄ[ԻՈՒԹԵՆԱԿԱՆ] ԵՎ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՄԻԱՑՅԱԼ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ ՈՐՈՇՈՒՄԸ

21 նոյեմբերի 1922 թ.

Ողջունել Կոմ[ունիստական] կուսակցության Անդրկովկասյան կոնֆերենցիայի որոշումը[21], մտնել Համախորհրդային Ֆեդերացիայի մեջ Անդրկովկասյան Ֆեդերացիայի միջոցով։ Հայտնել պատրաստակամություն պաշտպանել վերոհիշյալ գաղափարը ամեն ժամանակ և համաֆեդերացիայի կազմվելուց հետո։ Ամեն կերպ ընդառաջ գնալ մեր երկրի և բանվորագյուղացիական իշխանության պահպանման անհրաժեշտ պահանջներին և զարկ տալ տնտեսության բարձրացմանը։

Ֆ. 2, ց. 2, գ. 71ա, թ. 24

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 12

### ՀԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺՆԻ ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ՆԱՄԱԿԸ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏԵՂԱՄԱՍԱՅԻՆ ԿՈՄԻՏԵՆԵՐԻՆ ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՄԱՍԻՆ ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔ ԾԱՎԱԼԵԼՈՒ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

23 նոյեմբերի 1922 թ.

*ԲՈԼՈՐ ՏԵՂ[ԱՄԱՍԱՅԻՆ] ԿՈՄ[ԻՏԵ]ՆԵՐԻՆ*

Ներկա ժամանակաշրջանում ուժեղացված նախապատրաստական աշխատանք է տարվում հանրապետությունների ֆեդերացման հարցով. Սովետների համառուսաստանյան առաջիկա համագումարում այդ հարցը հատկապես կքննարկվի. վերջերս ավարտված Անդրկովկասյան կուսկոնֆերանսը որոշում ընդունեց Անդրկովկասը՝ որպես առանձին միավոր, ֆեդերացիայի կազմում ներառնելու մասին։

Անհրաժեշտ է ագիտկամպանիա սկսել, լայնորեն մասսայականացնել այդ գաղափարը,



դարձնելով այն սովետների գումարվող համագումարների հատուկ քննարկման առարկա, կազմել հատուկ բանաձևեր այդ հարցի վերաբերյալ։

Ի ղեկավարություն ուղարկվում են թեզիսները։

ԿԵՆՏԿՈՄԻ ԱԳԻՏԲԱԺՆԻ ՎԱՐԻՉ

Ֆ. 1, ց. 1, գ. 421, թ. 57

## ՓԱՍՏԱԹՈՒՂԹ № 13

### ԴԻԼԻՋԱՆ ՔԱՂԱՔԻ ԲՈԼՈՐ ՀԿ(Բ)Կ ԵՎ ՀԿԵՄ ԱՆԴԱՄՆԵՐԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ ԲԱՆԱՁԵՎԸ

21 դեկտեմբերի 1922 թ.

Դիլիջանի ՀԿ(բ)Կ և ՀԿԵՄ անդամների ընդհանուր ժողովը, լսելով ընկ. Բալայանի[22] զեկուցումը համաանդրկովկասյան խորհուրդների համագումարի[23] մասին և խորհրդային հանրապետությունների միության միացման մասին, խանդավառությամբ ողջունում է հանրապետությունների միացման իրականացումը, ողջունում է համագումարի բոլոր որոշումները և գտնում, որ դա է միմիայն բանվորագյուղացիական իշխանության շահերը և հիմքերը ամրապնդողը, որ այդպիսով հնարավորություն կլինի վերջնականապես միացված ուժերով [թե] քաղաքականապես և թե տնտեսապես ուժեղանալ ու հաղթահարել բոլոր խոչընդոտները՝ ժողովրդական տնտեսության ու կրթության գործը ավելի շաղկապելով։

Կեցցե խորհրդային հանրապետությունների միացումը։

Կեցցե համաշխարհային խորհրդային հանրապետությունը։

Ֆ. 5, ց. 2, գ. 108, թ. 28

*ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

1 Այժմ՝ Լենինական
2 Հ. Ա. Հովսեփյան— ՀԿ(բ)Կ Ալեքսանդրապոլի գավառային կոմիտեի քարտուղար
3 Կովկասի երկրամասային կուսակցական խորհրդակցությունը տեղի է ունեցել 1921 թ. օգոստոսի 12—14-ին, Թիֆլիսում։ Խորհրդակցությունում որոշում է ընդունվել միասնական քաղաքականություն վարելու վերաբերյալ
4 Զեկուցմամբ հանդես եկավ Հայաստանի ժողկոմխորհի նախագահ Ա. Ֆ. Մյասնիկյանը
5 Ս. Լ. Լուկաշին (Սրապիոնյան)— ՀԿ(բ)Կ Կենտկոմի առաջին քարտուղար
6 Ա. Ս. Նուրիջանյան— ՀԿ(բ)Կ Կենտկոմի քարտուղար
7 Այժմ՝ Թումանյանի շրջանի Օձուն գյուղ
8 Ա. Օ. Աբովյան— ՀԿ(բ)Կ Լոռու գավառի Ուզունլարի (Օձուն) շրջկոմի քարտուղար
9 Այժմ՝ Կամո
10 Զեկուցումով հանդես է եկել ՀԿ(բ)Կ Նոր-Բայազետի գավկոմի քարտուղար Մ. Մ. Զալյանը
11 Խ. Հ. Սարինգուլյան— ՀԿ(բ)Կ Մարտունու շրջկոմի քարտուղար
12 Էջմիածնի գավառի Ղուրդուղուլիի (Հոկտեմբերյան) շրջան
13 Ա. Ք. Լալայան— Էջմիածնի գավգործկոմի նախագահ
14 Գ. Խ. Գումեդին (Մելիք-Դադայան)— ՀԿԵՄ Դիլիջանի գավկոմի քարտուղար
15 Այժմ՝ Հոկտեմբերյանի շրջան
16 Տե՛ս № 13 ծանոթագրությունը
17 Այժմ՝ Էջմիածնի շրջանի Գայ գյուղը
18 Այժմ՝ Էջմիածնի շրջանի Հայկաշեն գյուղը
19 Տե՛ս № 1 ծանոթագրությունը
20 Այժմ՝ Կիրովական
21 Նկատի ունի Անդրկովկասյան կուսակցական երկրորդ կոնֆերանսի որոշումը ՍՍՀՄ կազմավորման մասին։ Կոնֆերանսը կայացավ 1922 թ. նոյեմբերի 11—12-ը Թիֆլիսում
22 Հ. Վ. Բալայան— ՀՍԽՀ ԺՏԳԽ նախագահ
23 Անդրկովկասյան սովետների առաջին համագումարը կայացավ 1922 թ. դեկտեմբերի 10—13-ը Բաքվում։

---

# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԱՆՎԵՀԵՐ ՄԱՐՏԻԿԸ

## (ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Կոմունիստական կուսակցության ականավոր գործիչ Սուրեն Սպանդարյանի կյանքն ու գործը վառ օրինակ են բոլոր նրանց համար, ովքեր իրենց նվիրել են ժողովուրդների ազատագրության գործին:**

**Սուրեն Սպանդարյանը պրոֆեսիոնալ հեղափոխական էր, անսահմանորեն նվիրված Վ. Ի. Լենինին, նրա բարեկամն էր, աշակերտը և զինակիցը: Նրա պայծառ ու սուր միտքը, հրապարակախոսի վառ տաղանդը, գաղափարական խոր համոզվածությունը, բարձր սկզբունքայնությունը ծառայել են մի նպատակի՝ հեղափոխության հաղթանակին: Նա նշանակալի դեր է խաղացել Ռուսաստանի հեղափոխական շարժումների պատմության մեջ, դարձել մարքս-լենինյան գաղափարների անխոնջ պրոպագանդիստ: Նրա համար կուսակցության և ժողովրդի շահերը վեր էին ամեն բանից, և այդ նա ապացուցեց իր կյանքով, հեղափոխական իր ողջ գործունեությամբ:**

**Մեր կուսակցության հերոսական պատմությունը, լենինյան գվարդիայի մարտիկների կյանքն ու պայքարը, որի շարքերում էր Սուրեն Սպանդարյանը, սովետական մարդկանց, երիտասարդ սերնդին տոգորում են կոմունիստական իդեալներին հավատարմության, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ ջերմ սիրո զգացումով, Հոկտեմբերի նվաճումներն անձնվիրաբար պահպանելու ժողովուրդների եղբայրության ու բարեկամության ոգով:**

ԱՅՍՕՐՎԱ ԲԱՐՁՈՒՆՔՆԵՐԻՑ, երբ երախտապարտ սերունդները հայացք են ձգում դեպի անցյալը, ավելի ու ավելի լրիվ է բացահայտվում նրանց սխրանքի վեհությունը, ովքեր իրենց կյանքի նպատակը համարում էին ժողովուրդների ազատության համար մղվող պայքարը:

...Հեղափոխականների հին սերունդը կյանքի լավագույն տարիներն անցկացրել է բանտերում, աքսորավայրերում, տարագրության մեջ: Ազատվում, փախչում, ապա կրկին բանտ էին ընկնում նրանք: Դա նրանց ճակատագիրն էր: Դառնալով կոմունիստներ՝ նրանք համոզված էին, որ վաղ թե ուշ ընկնելու են բանտ կամ բռնելու են աքսորի ճանապարհը, գուցե տարիներ, գուցե և ընդմիշտ: Բայց միշտ անվարան, հաստատակամ ու արի, նրանք անում էին իրենց գործը՝ մոտեցնում էին հեղափոխության ժամը: Եվ այդպես անցնում էին տարիները, և այդ տարիներն իրենց հետ երբեմն մահ էին բերում, երբեմն՝ մոռացում. նրանց ընտրած ճանապարհը շատ էր վտանգավոր, շատ էր ծանր և դափնիներ չէր խոստանում: Ասենք նրանք դրան չէին էլ ձգտում, որովհետև ոչ մի օր, ոչ մի ժամ նրանք չեն ապրել միայն իրենց համար:

Իսկ նա՝ պատանի Սուրեն Սպանդարյանը, ե՞րբ ընտրեց ճանապարհը՝ Թիֆլիսի արական գիմնազիայում սովորելի՞ս, թե՞ Մոսկվայի համալսարանում ուսանելիս, Կրասնայա Պրեսնյայի բարիկադների վրա՞, թե՞ թիֆլիսյան ցույցերի օրերին:

Գուցե նրան այդպիսին դարձրեց ժամանա՞կը, այն օրերը, երբ «Նոր-դարի» խմբագրատան մի անկյունում կարդում էր աշխարհից եկած հեռագրերը՝ ամեն ինչի, այդ նույն աշխարհում տիրող հսկայական անարդարության մասին:

Գուցե շփումը «Նոր-դարի» հեղինակների հետ՝ Նար-Դոս, Մուրացան, Պռոշյան, Ծատուրյան: Թերևս այս բոլորը միասին կանխորոշեցին այն ճանապարհը, որն ընտրեց նա, և որը նրան հասցրեց մինչև Լենինը:

XIX դարը պատմություն էր դառնալու: Աշխարհի վրա բացվում էր XX դարի արշալույսը: Ի՞նչ էր բերելու այն իր հետ, ի՞նչ հույսեր էին իրականանալու, ի՞նչ էին սպասում մարդիկ նոր, ահեղ դարից:



Երկու դարերի սահմանագլխին Թիֆլիսը գավառական կենտրոնից վերածվում էր նահանգային խոշոր քաղաքի՝ վեր բարձրացող պալատներով, գեղեցիկ փողոցներով ու հրապարակներով: Քաղաքում հոսում էր Քուռը՝ սեղմված քարապատ հունի և զարդարուն կամուրջների մեջ: Գետի վրա հնչում ու ծավալվում էր ձկնորսների թախծոտ երգը: Գետից վեր, ուղղաձիգ, ժայռոտ ափին վեր էր խոյանում ահարկու Մետեխի բանտը: Այդպես էր ամբողջ Ռուսաստանում՝ քաղաքների համայնապատկերի վրա իշխում էին բանտերը: Իսկ այդ նույն քաղաքների փողոցներով անցնում էին ցուցարարները: Չնայած դաժան ռեժիմին, չնայած ձերբակալություններին ու բանտարկություններին՝ հետզհետե ստվարանում էին նրանց շարքերը և ուժգնանում էր պայքարը:

Թիֆլիսն իրեն էր ձգում ապագա հեղափոխականներին: Կանցնի մի քանի տարի, և նրանց անունները հայտնի կդառնան ողջ Ռուսաստանում: Նրանք դառնալու են ժողովրդի հույսը:

Սուրեն Սպանդարյանը՝ պատանի գիմնազիստը, արդեն ընտրել էր ճանապարհը՝ դըժվարին, տառապալից, բայց միակ ճշմարիտը՝ հետագա ամբողջ կյանքի համար: Նա հոգով, էությամբ նրանց հետ էր, ովքեր կարմիր դրոշ պարզած քայլում էին գարնանային Թիֆլիսի փողոցներով: Ասենք 1902 թվականը ճակատագրական դարձավ նրա համար. գերազանց ավարտելով գիմնազիան՝ ամուսնացավ, ապա մեկնեց Մոսկվա...

Ի՞նչ էր նշանակում Մոսկվայի համալսարանը Սպանդարյանի համար. նախ և առաջ իրականություն դարձավ պատանեկան տարիների երազանքը: Հետագայում, 1911 թ. հունվարի 13-ին, երբ նշվում էր Մոսկվայի համալսարանի հիմնադրման տարեդարձը, թիֆլիսյան «Լիստոկ կոպեյկա»-ում Սպանդարյանը հոդված գրեց: Այդ հոդվածի տողերից հառնում են նրա հիացմունքն ու սերը դեպի համալսարանը, որը «Ռուսաստանին տվել է փայլուն գիտնականների, գրողների, ճշմարտության անխոնջ կերպով որոնողների, կյանքն ու բնությունը խորագնին հետազոտողների մի ամբողջ պլեադա»:

Ուսանողական տարիները համառ սովորելու, ռուս հասարակության հետ անմիջական շփման ու ծանոթացման տարիներ էին: Դրանք միաժամանակ հեղափոխական գործչի տեսական պատրաստականության և պրակտիկ գործունեության, դեպի լենինիզմը, բոլշևիկները վերջնականապես հակվելու տարիներ էին:

1904 թվականին մի շարք փորձություններ բաժին ընկան նրան: Սկզբում Թիֆլիսում ձերբակալվեց հայրը՝ Սպանդար Սպանդարյանը և արտաքսվեց Կովկասի սահմաններից, «Նոր-դարի» հրատարակությունը արգելվեց, հայրն ընկավ հսկայական պարտքերի տակ: Ծանր էր ընտանիքի նյութական վիճակը, Սուրենը Մոսկվայում ևս դրամի խիստ կարիք էր զգում՝ ուսման և սենյակի վարձը վճարելու համար:

Շուտով բռնկվեցին ուսանողական ցույցերը, որոնց ակտիվ մասնակիցն էր նա:

...Համալսարանը փակվում է, Սուրենը վերադառնում է Թիֆլիս: 1905 թ. գարնանը, անսալով հոր համառ խնդրանքներին, նա մեկնում է Գերմանիա՝ Հայդելբերգ, ուսանելու և հյուրընկալվում է Մուրացանի այրու՝ Ոսկի Տեր-Հովհաննիսյանի տանը: Չնայած նա հաճախում էր համալսարանի պարապմունքներին, չնայած նրանով հիացած էին՝ «Ճշմարիտ, ինչ հիանալի և խելոք տղա է», չնայած գերմանական սոցիալ-դեմոկրատների գործունեության հետ ծանոթանալուն և ռուս վտարանդիների հետ կապին, նա գտնում էր, որ «այստեղ իմ մնալը իզուր է, ես միայն տանջվում եմ և ջղերս ավելի լարվում են»:

Իսկ Ռուսաստանում ահագնանում էր պայքարը ցարիզմի դեմ. բռնկվել էր առաջին հեղափոխության մեծ հրդեհը: Հոկտեմբերյան զինված ապստամբության փոթորկալի օրերին, Մոսկովյան Կրասնայա Պրեսնյայի բարիկադների վրա զենքը ձեռքին կռվում էր Սպանդարյանը: Զինված պայքարի այդ օրերը նա երբեք չմոռացավ, նրա կարճատև կյանքի ընթացքի վրա այդ օրերը բախտորոշ հետք թողեցին...

Նահանգային քաղաքի գիմնազիական նստարանից մինչև Մոսկովյան համալսարան, ցարական մայրաքաղաքից մինչև Գերմանիա, ուսանողական ցույցերից մինչև զինված ելույթը Կրասնայա Պրեսնյայում, երբ հարկ եղավ հանուն սեփական սկզբունքների, հանուն այն գաղափարի, որին որդեգրվել էր պատանեկական տարիներից, զենք վերցնել: Եվ այդ չորսամյա ճանապարհը նրան տարավ դեպի հասունացում, աներեր, վստահ, անդավաճան: «Եվ նա Կովկաս վերադարձավ ոչ իբրև պարտված զինվոր»:

1906-ի թիֆլիսյան այդ օրը, երբ արդեն ծաղկել էին շագանակենիները, երբ շռայլ գարունը իր հմայիչ գույներն էր շաղ տվել, մտածո՞ւմ էր նա, թե ի՞նչ է սպասում իրեն, հոգսե՞ր, տառապա՞նք, ձերբակալություննե՞ր, ի՞նչ: Գիտե՞ր արդյոք նա, որ վեց տարի անց բարձրանալու է մինչև «Միջազգային պրոլե-

տարիատի միջազգային շարքերը», մինչև «լենինյան բոլշևիզմի ուսուցիչը հայ բանվորության...»: Հազիվ թե: Նա պարզապես այլ կերպ չէր կարող, հեղափոխությունը նրա էությունն էր, նրա կյանքը: Ասենք, որ դա նրա սերնդակիցներից շատերի հավատամքն էր:

Եվ երբ մարդիկ համոզում էին նրանց ապրել «նորմալ կյանքով», ահա թե ինչպիսի պատասխաններ էին ստանում.

Վ. Ի. ԼԵՆԻՆ.

— Ի՞նչ բան է ճշմարտությունը:

— Այն, ինչը տանում է դեպի հեղափոխություն ու բանվոր դասակարգի հաղթանակ:

— Ի՞նչն է բարոյական:

— Այն, ինչը տանում է հեղափոխություն:

— Ո՞վ է բարեկամը:

— Նա, ով օգնում է հեղափոխությանը:

— Ո՞վ է թշնամին:

— Նա, ով խանգարում է հեղափոխությանը:



— Ո՞րն է կյանքի նպատակը:

— Հեղափոխությունը...

Ֆ. Է. ՁԵՐԺԻՆՍԿԻ. «Ես չեմ կարող ոչ ինձ դավաճանել, ոչ էլ վերափոխել: Ես արդեն ետ դառնալու հնարավորություն չունեմ... իմ պայքարի սահմանը կարող է լինել միայն գերեզմանը... Եվ կյանքի երգն ապրում է իմ սրտում... Եվ ինձ թվում է, որ նա, ով իր սրտում լսում է այդ երգը, երբեք, ինչպիսի տանջանքներ էլ որ վերապրի, չի անիծի իր կյանքը, այն չի փոխի մի այլ, նորմալ կյանքով..»:

Ե. Դ. ՍՏԱՍՈՎԱ. «...Հասկացիր, թանկագին հայրիկ, որ դրանում է իմ կյանքը, դրանում և միայն դրանում (խոսքը հեղափոխական պայքարի մասին է): ...Առանց իմ այդ գործի ես անկարող եմ ապրել, դա իմ էությունն է: Դա ֆրազ չէ, հարազատս, սիրելիս, ինձ համար սարսափելի ծանր է, որ ստիպում եմ քեզ և մայրիկին տառապել, բայց ես այլ կերպ չեմ կարող, ավելի լավ է չապրել այդ դեպքում...»:

Ս. Ս. ՍՊԱՆԴԱՐՅԱՆ. 1915 թ. գարնանը Մոնաստիրսկոյե գյուղում Սպանդարյանը նամակ ստացավ մի բանվոր գրաշարից: Հավանաբար նամակում այնպիսի տողեր կային, որոնք չափազանց զայրացրել էին նրան, և ահա Բ. Շահպարոնյանին գրած նամակում նա խնդրում է նամակագրին որոշ բաներ հաղորդել. «... ես լավ գիտակցում եմ, թե ինչի համար եմ այս դրության մեջ և... թքում եմ «լավ ու շքեղ կյանքի վրա»:

ՅԱ. Մ. ՍՎԵՐԴԼՈՎ. «...Ոչ օրերով, ոչ ժամանակով, այլ ապրումների հաճախականությամբ պետք է չափել կյանքը... կարծում եմ, որ մենք երկուսով էլ (խոսքը Կ. Նովգորոդցևայի մասին է) կարող ենք լիակատար համոզվածությամբ ասել, որ անխուսափելի ու ցանկալի է կրկնել մեր ամբողջ կյանքը, եթե ստիպված լինենք այն նորից սկսել»:

Այս տողերը գրվել են ամենածանր փորձությունների պահին՝ բանտերում ու աքսորավայրերում, երբ թվում էր, թե տոկալն անհնարին է, ապրելը՝ անիմաստ: Այս նամակների հեղինակները բնավ ֆանատիկներ չէին, այլ զարմանալի շիտակ մարդիկ: Նրանք սիրել են կյանքը, անսահման կարոտել երեխաներին, հոգացել ծնողների մասին, բայց նրանց համար կուսակցության գործը վեր էր ամեն բանից՝ անձնական երջանկությունից ու անձնական բարեկեցությունից, «նորմալ» ու «շքեղ» կյանքից...

Իսկ մինչ այդ դեռ մի ամբողջ կյանք կար առջևում, բուռն, բերկրալի, երբեմն ծանր ու դառը, երբեմն ուղեկից ունենալով ձերբակալությունները ու բանտը:

Թիֆլիսյան իրադարձությունների կենտրոնում նա հայտնվեց միանգամից, անսպասելի: Քաղաքն ապրում էր բուռն կյանքով, եռում էր հեղափոխական առօրյան, բայց և արդեն գլուխ էր բարձրացնում սև ռեակցիան: Թիֆլիսյան միջավայրը յուրօրինակ էր նաև այլ առումներով՝ մենշևիկյան գզվռտոցներ, դաշնակցական տուրուդմփոցներ: Եվ հարկավոր էր ընդամենը մի երեկո, մի ելույթ քաղաքային դումայում, որպեսզի նրանք բոլորը միահամուռ շուռ գային Սպանդարյանի դեմ...

«Հեղափոխական մարքսիզմի և լենինիզմի գիտական հիմունքներն ու մարտական ոգին նա հիանալիորեն յուրացրել էր և ուներ խոհուն պրոպագանդիստի, աշխույժ ժուռնալիստի և մասսայական կրակոտ ագիտատորի բոլոր հատկությունները: Ամենուրեք լսվում էր նրա՝ ընկ Տիմոֆեյի եռանդուն ու սուր խոսքը՝ կուսակցական ժողովներում, բանվորական միտինգներում, միջֆրակցիոն աղմկալից հավաքույթներում, վիճաբանությունների լարված մթնոլորտում: Պայքարի ամենաթեժ պահերին հնչում էր ընկ. Տիմոֆեյի ձայնը...» (Ասքանազ Մռավյան):

Ապրիլին (1906 թ.) սկսեց լույս տեսնել «Կայծը», իսկ մեկ ամիս անց Հակոբ Հակոբյանի հետ խմբագրություն հայտնվեց Սուրեն Սպանդարյանը, և առաջին ծանոթությունը Սարգիս Կասյանի հետ: Իսկ երկրորդ հանդիպման ժամանակ նրանք արդեն բարեկամներ էին:

Ի դեպ, Սպանդարյանը գրում էր ռուսերեն, նրա հոդվածները թարգմանում էին երբեմն Հակոբ Հակոբյանը, երբեմն Մուշեղ Տիրացյանը: Սպանդարյանը խիստ ազդվում էր դրանից, և շուտով բոլորի համար անսպասելի սկսեց գրել հայերեն...

«Կայծի» էջերում սկսեցին հայտնվել նրա կրքոտ հրապարակախոսական հոդվածները, ծաղկում էր նրա ժուռնալիստական տաղանդը: Մարքսիստ հռետորի խոսքերը հնչում էին Թիֆլիսում ու Ալավերդում, Բաքվում ու Բորչալուում: Շահումյանն ու Սպանդարյանը ծավալել էին եռուն գործունեություն ոչ միայն թերթի էջերում, այլև լինում էին այնտեղ, ուր բարձրանում էր բանվորական շարժման ալիքը...

Եվ այսպես, Սուրեն Սպանդարյանն ամենապատասխանատու տեղամասում է՝ պաշտպանելով բանվոր դասակարգի շահերը, մարքսիզմի անաղարտությունը, կուսակցության լենինյան գիծը:

Կյանքի թվաբանությունը... ինչպե՞ս այն հաշվել, ապրած տարիների քանակո՞վ, բանտերում ու աքսորավայրերում անցկացրած օրերո՞վ, թե՞ կյանքի վրա թողած հետքով: 1906 թ. մայիսից, այն օրից, երբ ոտք դրեց

«Կայծի» խմբագրություն, մինչև 1912 թ. մայիսը, երբ Թիֆլիսի դատաստանական պալատում հնչեց դատավճիռը՝ «ցմահ աքսոր», Սպանդարյանն արեց անհնարինը՝ «անհայտ եկվորից» մինչև Անդրկովկասի բանվորական շարժման առաջնորդներից մեկը, մինչև բոլշևիկյան Կենտկոմի անդամ:

Օրը ինչպես տարի, այսպես կարելի է բնութագրել 1906—1912-ի յուրաքանչյուր օրը: Իսկ այդ օրերը իրենց հետ բերում էին դաժան պարտություններ ու փայլուն հաղթանակներ, ծանր տառապանքներ ու երջանիկ պահեր... Ե՞րբ էր սկսվում օրը, ե՞րբ ավարտվում, ինչպե՞ս էր հասցնում լինել բանվորական ժողովներում՝ մերթ Սև քաղաքում, մերթ Բիբի-Հեյբաթում, ինչպե՞ս էր հասցնում գրել ու արձագանքել կովկասյան իրադարձությունների այդքան բուռն ընթացքին...

Ռուսաստանում հնչում էին վերջին կրակոցները՝ սևհարյուրակայինները գնդակահարում էին ապստամբ բանվորներին, երկրի ճանապարհներով սլանում էին պատժիչ արշավախմբերը, հերոսներն ընկնում էին բանտ կամ բռնում աքսորի ճանապարհը... Իսկ պրոլետարական Բաքուն ասես ուշացած վեր էր բարձրանում հուսալքությունից՝ հին քաղաքի փողոցներով անցնում էին ցուցարարների ստվար շարքերը՝ 22 հազար, 50 հազար... Բանվորական այդ հզոր շարժումն իրենց նպատակին ծառայեցնելու համար այստեղ պայքար ծավալեցին մենշևիկներն ու էսէռները, դաշնակցականներն ու այլ ազգայնական կուսակցություններ, վրա հասան և պատժիչ արշավախմբերը: Բաքուն տոկում էր և պայքարում...

Բաքուն «նրա վրա չէր գալիս»: Բայց և չգնալ այնտեղ նա չէր կարող: 1907-ի հունվարին կովկասյան բոլշևիկյան կենտրոնի առաջադրանքով նա փոխադրվեց Բաքու և նշանակվեց Սև քաղաքի կուսակցական կազմակերպիչ: Աշխատանքի, պայքարի բուռն օրեր էին դրանք, Բաքվի բանվորներն անվարան գնում էին դեպի հեղափոխություն՝ չնայած ռեակցիայի մոլեգնություններին, չնայած մենշևիկների, ազգայնական կուսակցությունների դավերին: Մեծ ջանքերի գնով լույս տեսավ «Օրեր» բոլշևիկյան թերթը՝ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ս. Կասյանի խմբագրությամբ: Կրկին փայլուն հոդվածներով հանդես էր գալիս Սպանդարյանը, կրկին շրջում էր Անդրկովկասում, մերթ Թիֆլիսում էր, մերթ Ելիզավետպոլում՝ նախապատրաստական աշխատանք տանելով ՌՍԴԲԿ V համագումարի հրավիրման համար:

Վրա հասավ և փորձության ժամը: Գիմնազիչեսկայա փողոցի № 122 տունը շրջապատվեց այն պահին, երբ տեղի էր ունենում Բաքվի բոլշևիկյան կոմիտեի և ակտիվի անլեգալ խորհրդակցությունը: Ձերբակալվեց Ս. Սպանդարյանը, ձերբակալվեցին Ա. Ջափարիձեն, Վ. Ֆիոլետովը, Ս. Ալիլուևը, 19 մարդ: Բանտում նրանց «միացավ» Ս. Օրջոնիկիձեն և սկսվեցին... «ճակատամարտերը մենշևիկների հետ»:

Մի քանի օր անց բոլորն էլ ազատվեցին բանտից: Երբ ոստիկանությունը հասկացավ, թե ում է բաց թողել ձեռքից, արդեն ուշ էր, Սպանդարյանին գտնել այլևս չհաջողվեց, չնայած որ նրա անողոք հոդվածները շարունակում էին լույս տեսնել «Բակինսկի պրոլետարիում», չնայած այն բանին, որ նա շարունակ բանվորների հետ էր, և Սև քաղաքում նրա ղեկավարությամբ գործում էր բոլշևիկյան ուժեղ կենտրոնը:

Բաքվում ծաղկեց մարքսիստ տեսաբանի նրա տաղանդը, ամբողջ ուժով դրսևորվեց մեծ պրակտիկի նրա հմայքը՝ հավատ ռուսական հեղափոխության հաղթանակի հանդեպ, միշտ վառ պահելով բանվորների մարտական ոգին:

Արհմիութենական «Գուդոկում», բոլշևիկյան մարտական «Բակինսկի ռաբոչիում», «Բակինսկի պրոլետարիում», հետագայում Թիֆլիսում իր իսկ ջանքերով հիմնադրած «Լիստոկ կոպեյկայում» հնչում էին սպանդարյանական կտրուկ, եռանդուն խոսքերը՝ «...բոլոր նրանք, ովքեր սիրում են իրենց հայրենիքը, պետք է ելք որոնեն ստեղծված դրությունից, մահվան այս հորձանքից»:

Բաքուն «նրա վրա չէր գալիս». ձերբակալությունները, խուզարկությունները հաջորդում էին իրար: 1908-ի ձմռանը, Բայիլովի ժողովրդական տանը հրավիրված բոլշևիկների Բաքվի կազմակերպության կոնֆերանսում ոստիկանները վրա են հասնում անսպասելի, ամբիոնի մոտ էր Սպանդարյանը: Նա դանդաղ է մոտենում ոստիկաններին, մինչև ընկերները հասցնում են ցրվել:

1909-ի ապրիլին ձերբակալվում է Սպանդարյան-Լոկտևը, քիչ ավելի ուշ բանտ է բերվում նաև Շահումյանը: Քանիերորդ անգամ էին բանտարկվում նրանք:

Ահա կրկին բանտ կգան Եկատերինան և Օլգան: Շահումյանը բանտում կնոջը և երեխաներին հանդիպելիս շատ ծանր զգացում էր ունենում՝ տեսնելով նրանց այդպես փոքրիկ, ընկճված ու անօգնական: Իսկ Եկատերինան երբեք չտրտնջաց, միշտ լուռ, միշտ հեզ ու սիրելի...

Իսկ այդ նույն օրը, երբ Շահումյանն ազատվեց բանտից, Սպանդարյանին տեսակցության էր եկել կինը. «Սուրենը պառկած է անկողնում, սոսկալի գունատ է, հազում է, բայց ջերմությունը իջել է...»: Ինչպիսի՜ տառապանք էր բաժին ընկել այդ երկու կանանց՝ Եկատերինա Շահումյանին և Օլգա Սպանդարյանին: Նրանք անտրտունջ կիսում էին ամուսինների բաժին ընկած դժվար կյանքը՝ բազմանդամ ընտանիքների հոգսերը վերցնելով իրենց վրա...

Մի քանի տարի անց, երբ Սպանդարյանն արդեն սիբիրյան աքսորում էր, Օլգա Սպանդարյանը Շահումյանին գրում է. «Թանկագին Ստեփան Գևորգիչ... Որ իմ կյանքի ճանապարհին վարդեր չեն փռված, այդ ես ինքս եմ այդպիսին ընտրել, և ամուսնանալով Ս.-ի հետ, ես պատրանքներով չեմ տարվել և գիտցել եմ, որ բարեկեցիկ կյանք չի սպասում ինձ... Դուք շատ մտերիմ եք եղել նրա հետ: Դուք չեք կարող չիմանալ նրա՝ որպես անձնավորության օբյեկտիվ արժեքը: Նա ստեղծված չէ ընտանեկան կյանքի համար: Բայց դրանից նա չի կորցնում իր արժեքը, որպես անձնավորություն: Նա կատարում է իր գործը, նա իրականացնում է այն բոլոր կանխատեսումները, որպիսիք բխում են նրա հոգու պահանջներից, նրա բնավորությունից, նրա անհատականությունից...»:

Մեկ ամիս անց Սպանդարյանն ազատվեց բանտից, որպեսզի օգոստոսի 28-ին կրկին ձերբակալվի, այս անգամ շատ ավելի լուրջ մեղադրանքով: Էլի երեք ամիս և հրապարակվեց վճիռը՝ արտաքսել Բաքվի սահմաններից...

Անցնում էին տարիները, եկավ և 1911 թվականը, իսկ ռեակցիան անում էր իրենը, նոսրանում էին հեղափոխականների շարքերը, սեղմվում էր օղակը Շահումյանի, Սպանդարյանի և մյուս ընկերների շուրջը, այնինչ Փարիզից եկել էր Սերգո Օրջոնիկիձեն և բերել Լենինի ցուցումները... Հուլիսի 29-ին ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության գործադիր հանձնաժողովը որոշում է քվերակել հօգուտ համառուսական կոնֆերանսի հրավիրման: Բաքուն դառնում է Ռուսաստանի կազմակերպչական հանձնաժողովի հիմնադիր վայրը: Երկու ամիս անց Սաբունչիում Բաքվի, Թիֆլիսի, Կիևի և այլ կազմակերպությունների ներկայացուցիչները՝ Շահումյանը, Սպանդարյանը, Օրջոնիկիձեն, Ստասովան, Ենուկիձեն, Շվարցը և ուրիշներ միաձայն քվեարկում են ՌԿՀ-ի ստեղծման օգտին: Երբ այս լուրը հասավ Վլադիմիր Իլյիչին, նրա ուրախությունն անսահման էր. «Դրոշը պարզված է»— բացականչեց նա:

Իսկ Բաքվում, մեկ օր անց, ձերբակալվեցին Շահումյանը, Ենուկիձեն, Կասպարովը: Սպանդարյանը նախօրյակին մեկնել էր Թիֆլիս, Օրջոնիկիձեին փրկեց պատահականությունը:

ՌԿՀ-ի երկրորդ նիստը անցկացվեց Թիֆլիսում՝ Ելենա Ստասովայի բնակարանում: ՌԿՀ-ն ընդունեց դիմում և բանաձև, որոնք ուղարկվեցին տեղերը: Սկսվեց կոնֆերանսի նախապատրաստման լարված շրջանը: Սպանդարյանը հասցրեց լինել Անդրկովկասի քաղաքներից շատերում, Մերձբալթիկայում, Պետերբուրգում, որտեղից և մեկնեց Փարիզ:

Պրագայի վրա բացվում էր 1912-ի հունվարյան առավոտը: Խաղաղ, գեղեցիկ քաղաքի ժողովրդական տան երկրորդ հարկի դահլիճում սկսվեց համառուսական վեցերորդ կոնֆերանսը, որը հետո պիտի պատմական կոչվեր, և վճռական նշանակություն ունենար կուսակցության ապագայի համար: Իսկ Սպանդարյա՞նը, այս կոնֆերանսում նա առաջին անգամ ծանոթացավ Լենինի հետ, դա գաղափարակիցների մեծ բարեկամության սկիզբն էր, այնուհետև իր կարճ կյանքի ընթացքում Սպանդարյանը հավատարիմ մնաց Լենինին, կուսակցության գործին:

Այս կոնֆերանսում Սպանդարյանն ընտրվեց նոր Կենտկոմի, ինչպես նաև Կենտկոմի Ռուսական բյուրոյի անդամ: Առջևում սպասվում էին փոթորկալի օրեր, և նա պատրաստ էր դիմագրավելու բոլոր փորձություններին: Իսկ երկրում բարձրանում էր նոր հեղափոխության ալիքը: Հինգ տարի անց կփլվի կայսրությունը:

Իսկ մինչ այդ դեռ ճանապարհ կար անցնելու, այդ ճանապարհը անցնելու էր բանվորական Բաքվով մինչև Մետեխի բանտ, դատաստանական պալատի ոչ գթառատ վճռից մինչև բևեռային շրջագծից այն կողմ, մինչև Կրասնոյարսկի հիվանդանոց, որտեղից և ըսկըսվեց նրա... անմահությունը:

Կոնֆերանսի պատգամավորները դեռ չէին ցրվել տեղերը, երբ Մոսկվայի հասարակական կարգի պահպանության բաժնի գործակալները հաղորդեցին, որ Սպանդարյանն ընտրվել է Կենտկոմի անդամ և մտադիր է մեկնել Բաքու: Փետրվարին նրան արդեն սպասում էին Բաքվում: Եվ երբ նա իջավ գնացքից, անմիջապես ընկավ գաղտնի գործակալների հսկողության տակ. չանցած մի քանի օր, մարտի կեսերին նա ձերբակալվեց և բերվեց Բաքվի բանտ, և անսպասելի հանդիպում Շահումյանի, Ենուկիձեի հետ: Ինչքա՜ն ուրախություն պատճառեց Վ. Ի. Լենինից ստացված նամակը: Չնայած բանտային հաստ պատերին, այստեղ էլ թափանցում էին մեծ աշխարհի իրադարձությունների արձագանքները, այս-

տեղ էլ շարունակվում էր պայքարը հանուն մեծ գործի հաղթանակի:

Անցնող օրերը մոտեցնում էին Սպանդարյանի համար ճակատագրական պահը: Ճիշտ է, բանտից նրան ազատեցին և կրկին վտարեցին Բաքվից, բայց մի քանի օր անց, երբ նա, խուսափելով հետապնդող լրտեսներից, Թիֆլիս—Բաքու գնացքով Եկատերինադար էր գնալու, արդեն որոշված էր կրկին ձերբակալել նրան: Գնդապետ Պաստրյուլինի՝ Թիֆլիսի պահնորդական բաժանմունքի պետի պահանջով նա կրկին ձերբակալվեց և Բաքվից փոխադրվեց Թիֆլիս, Մետեխի բանտ: Բայց փորձությունը դեռևս առջևում էր, շուտով վրա կհասնի մայիսի 10-ի օրը, որը խորտակեց ոչ միայն Սպանդարյանի հույսերը: Այդ օրը, երբ Թիֆլիսի ուսուցիչների ընկերության դպրոցի վարիչ Ելենա Ստասովան մեկնում էր Պետերբուրգ՝ հարազատների մոտ, որոշեց Թիֆլիսի կոմիտեի ողջ կուսակցական արխիվը վստահել իր դպրոցի երկու ուսուցչուհիներին՝ Արմենուհի Հովվյանին և Մարիա Վոխմինային: Բայց նրանք ևս ոստիկանության հսկողության տակ էին: Հենց նույն օրը ուսուցչուհիները ձերբակալվեցին, գտան և փաստաթղթերը: Պետերբուրգում անմիջապես ձերբակալվեց և Թիֆլիս բերվեց Ստասովան, Ռոստովում կալանավորվեց Վերա Լազարևնա Ծվեյցերը, Թիֆլիսում՝ Վասիլ Խաչատրյանն ու Ներսես Ներսեսյանը: Եվ այս դեպքերը պետք է կատարվեին այն օրը, երբ մտադիր էին Սպանդարյանին հյուսիս արտաքսել: Հիմա արդեն ուշ էր: Հայտնաբերվեցին նաև Սպանդարյանի նամակները և գրած կոչերը:

Մետեխի բանտային այդ օրերն ու ամիսները ամենածանրն էին Սպանդարյանի համար, և վերջապես 1913 թ. մայիսի 2—4-ը Թիֆլիսի դատաստանական պալատը նրանց բոլորին դատապարտեց ցմահ աքսորի...

Սպանդարյանը դատավճիռը անվրդով ընդունեց, նա այլ բան չէր սպասում ցարական դատարանից, որը երբևէ գթառատ չեղավ: Նրա վճիռներում հնչում էին՝ երեք բառ, բանտ, աքսոր, տաժանակրություն: Նրան այլ բան էր մտահոգում, կկարողանա՞ արդյոք շարունակել պայքարը, ինչպե՞ս կլինի ընտանիքի ճակատագիրը: Ի՞նչ է սպասվում իրեն սիբիրյան հեռուներում, մոռացո՞ւմ, մա՞հ: Միայն թե այնտեղ, հեռվում վրա կհասնի կարոտի ցավը և «տխուր կլինի առանց ձեզ, իմ բալիկներ, առանց մայրիկի»:

Կնոջ ու երեխաների հետ վերջին տեսակցության ժամանակ նա ջանում էր, որպեսզի վանի թախիծը, որպեսզի տառապանք չտեսնի երեխաների աչքերում: Իսկ ինքը ինչպե՜ս էր ցանկանում պարապել նրանց հետ՝ «որպեսզի դուք, իմ բալիկներ, լավ մարդիկ դառնաք՝ հասարակության համար օգտակար, որպեսզի ձեր սրտերը լինեն բարի և կարեկից...»:

«...Հիմա այստեղ սարսափելի ցուրտ է, երկյուղով մտածում եմ ապագայի մասին, չունենալով տաք հագուստ, ոտնաման և այլն... Տրամադրությունս կայտառ է, ուրախ և լավ: Կեցցե՛ կյանքը: Մենք դեռ ոտքի կելնենք, կարիք չկա հուսահատվելու...»: Այս տողերի հեղինակը Սուրեն Սպանդարյանն է:

Ինչքան էլ արտասովոր է, այդ նույն տարիներին Սիբիր աքսորված Ֆ. Ձերժինսկին Սպանդարյանի նման ահա թե ինչ է գրել. «Որքան ավելի սարսափելի է ներկայիս դըժոխքը, այնքան ավելի բարձր եմ լսում կյանքի հավիտենական հիմնը, ճշմարտության, գեղեցկության ու երջանկության հիմնը, և ինձ մոտ հուսահատություն չկա: Կյանքը նույնիսկ այն ժամանակ է երջանիկ, երբ հարկ է լինում շղթաներ կրել»:

Եվ էլի մի նամակ՝ գրված այդ օրերին: Յակով Միխայլովիչ Սվերդլովը պայքարում էր մահվան դեմ, գիշերը ջերմաստիճանը բարձրացավ մինչև 41, շնչառությունը ընդհատ էր ու թույլ, իսկ առավոտյան, երբ դրությունը փոքր-ինչ մեղմացավ, նա նամակ գրեց կնոջը Կլավդիա Նովգորոդցևային. «Գիշերը համարյա չեմ քնել... ես վատ եմ զգում, օ՜, որքան վատ է: Եվ ոչ մի մոտիկ մարդ չկա, թեկուզ բոլորովին կործանվես, ոչ ոք շուտ չի իմանա... Սիրելիս, ինձ համար մի անհանգստանա, ուժասպառ չեմ լինի, ոչ ֆիզիկապես, ոչ բարոյապես հաշմանդամ չեմ դառնա: Հույս ունեմ ողջ, այս խոսքերի լիակատար իմաստով, ազատ կյանք վերադառնալ»:

Երեք կյանք՝ կնոջը, քրոջը, երեխաներին գրած անձնական փակ նամակներում: Եվ ինչպիսի՜ պայմաններում են գրվել այդ նամակները. ցմահ աքսորյալի դառն ու անհույս վիճակ, և ինչպիսի՜ հավատ սեփական ուժերի նկատմամբ, ինչպիսի՜ ջերմ սեր կյանքի հանդեպ:

Սպանդարյանն ապրում էր Ինոկենտևսկայա գյուղում՝ ծերունի Անտիպևսկիների տանը: Աքսորային կյանքի օրերն անչափ մտահոգիչ էին, աշխատանք չկար, դրամ չկար: 1914-ի հունվարին հյուր եկավ Ելենա Ստասովան: Չնայած հանդիպման ուրախությանը, Ստասովան գրում էր, որ Սպանդարյանը «գյուղական կյանքից թախծում է»: Ասենք դա խոստովանում է և Սպանդարյանը Վլադիմիր Իլյիչին գրած նամակում, բայց հենց այդ նամակում արդեն հնչում են իրեն հատուկ սպանդարյանական տողերը՝ «Մենք էլ ապրում ենք ռուսաստանյան պայքարի արձագանքներով և



այստեղ միևնույն չափով կրկնում ենք այն». 1914-ի գարնանը ասես չքացավ հուսահատությունը: Սկսեցին Մոնաստիրսկոյե՝ Սպանդարյանի մոտ գալ Ստասովան, Մարիա Վոխմինան, Արմենուհի Հովվյանն ու Վասիլ Խաչատրյանը: Եռանդուն գործում էր Ստասովան: Նշվեց մայիսի 1-ը, ստեղծվեց «ինֆորմացիոն բյուրո», որը կապ էր պահպանում Վ. Ի. Լենինի հետ: Սակայն շուտով նրանց գործունեությունը հայտնի է դառնում ոստիկանությանը, ինչպես նաև լուրեր են պտտվում, որ նրանք պատրաստվում են փախչել:

Այդ տարիներին աքսորում էին գտնվում կուսակցության համարյա բոլոր նշանավոր գործիչները, Լենինն ամեն ինչ անում էր նրանց օգնելու, նրանց փախուստը կազմակերպելու համար: Փախուստի պլանները քննարկվում էին և՛ 1913, և՛ 1914 թվականներին: Կենտկոմի խորհրդակցություններում երկու անգամ հարց դրվեց կազմակերպելու Սվերդլովի, Սպանդարյանի և մյուսների փախուստը: Ցավոք, այդ փորձերը ձախողվեցին, որովհետև դրանց իրականացումը դրված էր պրովոկատոր Ռոման Մալինովսկու վրա, և, հասկանալի է, որ այդ ամենի մասին իսկույն հայտնի էր դառնում ոստիկանական դեպարտամենտում: Միաժամանակ նրանց «հսկում էր» և դաժան բնությունը. Տուրուխանսկից դեռևս ոչ ոք չէր փախել:

Հայտնի է Վլադիմիր Իլյիչի հոգատարությունը կուսակցական պայքարի ընկերների նկատմամբ: Երբ Սպանդարյանը գտնվում էր Փաբանտում, ապա՝ աքսորում, Վ. Ի. Լենինը Փարիզում այցելեց ավագ Սպանդարյանին, օգնեց դրամով, ապա Ոսկի Տեր-Հովհաննիսյանի միջոցով խնդրեց հոգ տանել երկու Սպանդարյանների մասին: Այդ օգնությունն ավելի գործնական դարձավ Սպանդարյանի աքսորի տարիներին: Վ. Ի. Լենինի, Ն. Կ. Կրուպսկայայի ջանքերով, Կրակովի, Բեռնի աքսորյալներին օգնող միությունների միջոցով նա սիստեմատիկ օգնություն էր ստանում: Կրասնոյարսկի պետական արխիվում պահպանվող մի նոր փաստաթղթից հայտնի է դառնում, որ Վլադիմիր Իլյիչին հայտնվել է Սպանդարյանի աքսորավայրի հասցեն, որ ջանքեր են գործադրվել նրան Մոնաստիրսկոյեից հարավ փոխադրելու համար:

Այդ տարիներին շարունակվում էր Վ. Ի. Լենինի և Ս. Սպանդարյանի նամակագրությունը: Այդ կարճառոտ նամակներում անգամ ըզգացվում էր նրանց մեծ բարեկամությունը:

**Փաստաթուղթ № 1: Արտակարգ կարգով:**

«...Կանսկի գավառային ոստիկանապետի կարծիքի հիման վրա Կանսկի գավառի Պերովսկի՝ պետական հանցագործության համար աքսորաքնակ Սուրեն Սպանդարով Սպանդարյանցի փախուստն արտասահման կանխելու համար ոստիկանության խստագույն հսկողության տակ տեղափոխել Տուրուխանյան երկրամաս...»:

Նահանգային բանտային տեսուչ:

Ոչինչ չօգնեց... հունիսի 10-ին վաղ առավոտյան Սպանդարյանն արդեն Տուրուխանսկ մեկնող նավի տախտակամածին էր, նրա հետ էր և Վերա Ծվեյցերը:

**Փաստաթուղթ № 2, 27/2—1915, Մոնաստիրսկոյե գյուղ, Տուրուխանյան երկիր:**

«Բարև Ձեզ,

Թանկագին Վլադիմիր Իլյիչ:

Այս րոպեիս Իոսիֆն ինձ մոտ հյուր է, և ցանկություն ծագեց ուղարկելու Ձեզ մեր ողջույնը: Ինչպե՞ս եք, ի՞նչ եք անում: Ինչպե՞ս է Ձեր տրամադրությունը: Գրեցեք, ինչ որ կարող եք: Ծարավի ենք կենդանի հոգու: Կսպասենք Ձեր նամակին:

Սուրեն»

«Կենդանի հոգի», այն ժամանակ աքսորյալների մեջ սա ամենատարածված արտահայտությունն էր: Պահել այն, ինչ էլ որ լինի, ուր էլ որ նետեն: Իսկ աքսորը սարսափելի էր հենց նրանով, որ սպանում էր այդ հոգին: Բայց ահա 1915 թ. հրավիրվեց այն ժամանակների համար ամենահեղինակավոր մի ժողով՝ ՌՍԴԲԿ Կենտկոմի Ռուսական բյուրոյի աքսորյալ ընկերների մասնակցությամբ: Դա սիբիրյան աքսորի ամենաուշագրավ երևույթն էր: Ի դեպ այս ժողովում քննության էր առնվում դեպուտատների վարքը ցարական դատարանում, որտեղ նրանք բացահայտորեն հայտարարեցին պատերազմում բոլշևիկների դիրքավորման մասին և ցմահ աքսորվեցին Սիբիր: Ժողովում ղեկավար դեր էին խաղում Յա. Սվերդլովը և Ս. Սպանդարյանը: Վերջինս երկու շատ կարևոր՝ պատերազմի և դատարանում դեպուտատների վարքագծի հարցերում պաշտպանեց միանգամայն ճիշտ դիրքորոշում, և, երբ հետագայում ստացվեցին լենինյան թեզիսները, պարզվեց, որ Սպանդարյանն իր խոհերով, իր մտքերով միշտ Լենինի հետ է: Միաժամանակ ժողովի բանաձևը գրեցին Սվերդլովը և Սպանդարյանը: Այն ուղարկվեց Վ. Ի. Լենինին և տեղական կազմակերպություններին: Այդ փաստաթուղթը, որը գրված է խորապես գիտականորեն և լենինյան դիրքերից է գնահատում դումայի բոլշևիկյան ֆրակցիայի գործունեությունը, հսկայական նշանակություն ունեցավ աքսորյալների հակապատերազմական դիրքավորման համար: (Հարկ է նշել, որ ժողովի բանաձևը տեղ չի գտել Սուրեն Սպանդարյանի հրապարակված երկերում):

Ինչպիսի՞ պայմաններում է արվել այս ամենը: Սպանդարյանը ծանր հիվանդ էր, Սվերդլովը տառապում էր թոքախտով, բայց նրանք շարունակում էին գործել...

Սպանդարյանի վիճակը օր-օրի վատանում էր, ընկերների խորհրդով նա դիմում է նահանգապետին՝ իրեն հարավ փոխադրելու համար՝ կցելով բժշկի եզրակացությունը: Երկար գրագրություններից հետո վերջապես Սպանդարյանին թույլատրվում է տեղափոխվել Ենիսեյսկ:

Եվ վերջին նամակը Վ. Ի. Լենինին.

18 մայիսի 1916 թվական:

«Թանկագին ընկերներ: Ձեզ ամենաբոցավառ ողջույնն ենք հղում մեր սառը երկրներից:

Մենք ոգով արի ենք և նույնն ենք ցանկանում Ձեզ...»:

Ենիսեյսկում Սպանդարյանին դիմավորեցին դումայի բոլշևիկ դեպուտատներ, աքսորյալներ Պետրովսկին և Բադաևը: Այստեղ էլ Սպանդարյանը շարունակում էր աշխատել: Բայց վիճակը դառնում էր անհուսալի և որոշվեց, որ նա կտեղափոխվի Կրասնոյարսկի հիվանդանոց:

Ու վերջին նամակը աղջկան: 24 հուլիսի 1916 թ., ք. Ենիսեյսկ

«Թանկագին բալիկ ջան:

Ես Ենիսեյսկում եմ, պառկած եմ անկողնում, որովհետև ինձ արգելված է ման գալ, խմում եմ կումիս և ուրիշ դեղեր, և չլատ, շատ վատ եմ զգում ինձ: Սովորական սնունդն ինձ արգելված է, իսկ ուրիշ տեսակն այստեղ շատ թանկ է (կանաչեղենը), այդ պատճառով ընտիպված հալից ընկնում եմ: Թանկագիններս, գոնե դուք մխիթարեցեք ինձ ձեր նամակներով և հանգստացրեք իմ հիվանդ ու ըմբոստ սիրտը...

Քո և ձեր բոլորի պապա՝ ՍՈՒՐԵՆ»:

Այդ հիվանդ, բայց ըմբոստ սիրտը, այդ բարի և ջերմ սիրտը, որ մինչև վերջ բաբախեց պայծառ ու լուսավոր կյանքի համար այն միլիոնավորների, որոնց թշվառությունը խորապես զգում էր նա, որը կարող էր երկար ապրել, ապրել «լավ ու շքեղ կյանքով», սակայն «թքում էր լավ ու շքեղ կյանքի վրա», որովհետև նա ցանկանում էր, որքա՜ն էր ցանկանում, որ ազնիվ ու շիտակ ապրեն ու մեծանան ոչ միայն իր զավակները, որ նորօրյա կյանքը բարի, բարի ժպտա նրանց, որ օգտակար ու լավ մարդիկ դառնան նրանք...

Կրասնոյարսկ, բժիշկների ընկերության քաղաքային հիվանդանոց...

«Սուրենը մեռնում էր, ...բայց մահանալիս էլ նա միշտ մտածում էր այն մասին, ինչին որ տվել էր նա իր սքանչելի կյանքն առանց մնացորդի... Որ հեղափոխությունը մոտ է 17 թվի շեմին...

«Կանգնեցեք Լենինի դրոշի տակ»: Եվ նույն այս բառերը շուրթերին դադարեց բաբախելուց բոցաշունչ բոլշևիկի սիրտը»: Սա գրել է Վերա Լազարևնա Շվեյցերը, սիբիրյան աքսորի նրա ընկերուհին:

Սպանդարյանին թաղեցին քաղաքի ծայրամասում, Կաչինսկի գերեզմանոցից այն կողմ, «մի մռայլ անկյունում»: Աքսորյալ ընկերները լուռ խոնարհեցին գլուխները: Շարունակում էր անձրև գալ:

Իսկ այդ ժամանակ քահանա Ալեքսանդր Սելսկին թերթում էր «Ծնունդ և մահ» գրքի էջերը և դանդաղ գրում.

Տ ե ղ ե կ ա ն ք

«Աքսորաբնակ ուսանող Սուրեն Սպանդարովիչ Սպանդարյանցը, 33 տարեկան, մահացավ 1916 թ. սեպտեմբերի 11-ին. նրա թաղման մասին ակտը գրանցված է Կրասնոյարսկ քաղաքի հիվանդանոցային եղեկեցու չափաբերական մատյանում, 226 համարի տակ, որը և ստորագրությամբ ու եկեղեցական կնիքով հավաստում եմ»:

Վլադիմիր Իլյիչ Լենինը ցավով իմացավ Սպանդարյանի մահը: Նա «Սոցիալ-դեմոկրատ» թերթում հատուկ մահախոսական նվիրեց Սպանդարյանին: «...Ընտրվելով նոր Կենտկոմի անդամ՝ Սպանդարյանը Ռուսաստանում կատարած իր աշխատանքով հսկայական ծառայություններ մատուցեց... »:

Ստեփան Շահումյանը «Պայքար» թերթում գրեց.

«Սուրենը չկա այլևս և այդքան երիտասարդ հասակում: Խոնարհվենք մեր ընկերոջ հիշատակի առաջ և... շարունակենք այն գործը, որի համար նա ապրեց և մեռավ...»:

Մարդու անունը և գործը ապրում են հավերժ:

**ՀԵՆՐԻԿ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**

---

# 1982 թվականին «Լենինյան ուղիով» ամսագրում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ ՀՈԴՎԱԾՆԵՐ



Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 112-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ







ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ



ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՓԱՌԱՎՈՐ ՎԱԹՍՈՒՆԱՄՅԱԿԸ

| | №№ | էջ էջ |
|---|---|---|




| | №№ | էջ էջ |
|---|---|---|

Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի՝ 24.11.82 թ.: Ստորագրված է տպագրության 17.12.82 թ.: ՎՖ 10057: Ֆորմատ՝ 70×108¹/₁₆: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15232: Պատվեր 2488:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2